# ՄԱՅԻՍՅԱՆ ԵՐԳ

ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նորից գարուն, նորից տոն
Ու ցնծություն մայիսյան.
Թմբուկները թնդան թող,
Գետն է հորդում շարասյան:
Չի երևում աղջիկը
Շարքերի մեջ այս վարար.
Ասես փոքրիկ ծաղիկ է
Ճյուղերի մեջ անհամար...
Պապը գրկում է նրան,
Դնում ուսին, որ տանի.
Պատվանդան է կարծես նա,
Ուր իջնում է աղավնի...

# ԳԱՐՈՒՆ

ՂՈՒԿԱՍ ՍԻՐՈՒՆՅԱՆ

Ի՞նչ քարեր են՝
Կլոր, նախշուն
արագորեն
այդպես շարժվում
մերթ ծոքն ի վար,
մերթ լեռն ի վեր:
— Կաքավներ են
կարմրաոտիկ,
քարերի պես
նախշուն, փոքրիկ:
— Բայց տես, նրանց
շարժումի հետ
շարժվում են
անտառ ու գետ,
ծաղիկ, շաղիկ,
ամպ ու բլուր.
այս ի՞նչ շարժում
կա ամենուր:
— Այդ գարունն է,
որ ամեն տեղ
դարպասներն իր
բացել շքեղ
ու բոլորին
առած այդպես
տանում է իր
խորքերն անտես:

# ԱՆԱԿՆԿԱԼ ՀԱՆԴԻՊՈՒ

Երևանի Կիրովի անվան զբոսայգու մանկական ընթերցասրահում երեխաներն ու նրանց ծնողները լսում էին նախկին օդաչու Նիկոլայ Վարդանյանին.

— Առաջադրանք էի ստացել նկարահանել գերմանացիների ձեռքում գտնվող Բալթիկ ծովի Սարեմա կղզին: Այն էլ ասեմ, որ այդ կղզին բանալի էր Ֆիննական ծոցից Բալթիկ ծով մտնելու համար: Գերմանացիներն ամրացել էին կղզում ու թույլ չէին տալիս մեզ դուրս գալու Բալթիկ ծով և հարվածել Քյոնիգսբերգին: Մի խոսքով, խիստ անհրաժեշտ էր նկարահանել կղզին՝ պարզելու գերմանացիների ուժերն ու հնարավորությունները: Հանձնարարությունը հաջող կատարելուց հետո, երբ իմ սավառնակով մոտենում էի ռազմաճակատի գծին, անձնակազմիս ռադիստ Բորիս Տրետյակովը տագնապահար կանչեց.

— Ընկե՛ր լեյտենանտ... ընկե՛ր լեյտենանտ...

— Լսո՛ւմ եմ...

— Մեզ հետապնդում է գերմանական «Մեսսերշմիդտը»...

Ես չէի հասցրել ինքնաթիռի ուղղությունը փոխել, երբ օդում, մեզ շատ մոտ պայթեց մի արկ... իմ ութ տոննանոց անռեյի մեքենան ցնցվեց, ընկավ մի քանի մետր, բայց ես կարողացա նրան տալ իր նախկին դիրքը և ուղղություն վերցնել դեպի մեր օդանավակայանը: Աշխատում էի հանգստացնել շտուրմանիս և ռադիստիս, որ անվնաս տեղ կհասցնեմ: Սակայն օդանավը արագորեն կորցնում էր իր բարձրությունը, իսկ օդանավակայանը բավական հեռու էր: Ավիագնդի հրամանատարությունն իմանալով այդ՝ թույլատրեց վայրէջք կատարել մոտակա օդանավակայանում...

Մեքենան շարունակում էր կորցնել բարձրությունը, իսկ գերմանական ինքնաթիռը գնալով մոտենում էր մեզ: Նորից մի արկ պայթեց... Գրեթե հաշտվել էինք անխուսափելի մահվան հետ, երբ նորից լսեցի ռադիստ Տրետյակովի ձայնը.

— Ընկե՛ր հրամանատար, օդում է Նելսոն Ստեփանյանի ինքնաթիռը:

— Ինչպե՞ս իմացար,— ցնծությամբ հարցրի նրան:

— Գերմանացիները տագնապով հաղորդում են այդ մասին, զգուշացնում մեզ հետապնդող «Մեսսերշմիդտին», որ խուսափի Նելսոն Ստեփանյանի հետ հանդիպելուց:

Ես բարեհաջող վայրէջք կատարեցի ուրիշ օդանավակայանում: Մեզ շրջապատեց հետաքրքրասերների խիտ օղակ: Չանցած մի քանի րոպե ուրախ ժպիտը դեմքին, օդաչուի համազգեստով մի մայոր մոտեցավ: Բարևելուց հետո հարցրեց մեր ով լինելը և վայրէջք կատարելու պատճառը:

— Հա՞յ եք,— իմ առոգանությունից երևի հասկանալով, հարցրեց նա:

— Միշտ այդպես, ընկե՛ր մայոր, հայ եմ, Վարդանյան...

Երբ լսեց ազգանունս, ինչ-որ հաճելի ժպիտ խաղաց նրա դեմքին և կիրթ հայերենով ասաց.

— Ծանոթանանք, Նելսոն Ստեփանյան...

Կարո՞ղ եք պատկերացնել, թե ինչ կատարվեց ինձ հետ այդ պահին, ոտքերիս տակ հող չէի զգում: Սիրտս այնքան արագ էր բաբախում, որ թվում էր, թե հիմա դուրս կթռչի... Նկատելով հուզմունքս ու շփոթմունքս, Նելսոն Ստեփանյանն իր մարդկանցից մեկին կարգադրեց հոգալ անձնակազմիս սնունդի մասին, իսկ ինձ տարավ իր առանձնասենյակը:

— Ես էլ եմ երևանցի, ապրում ենք Կոնդում: Եկմալյան փողոցում

# ՆԵԼՍՈՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ ՀԵՏ

է գտնվում հայրական տունս: Ավարտել եմ Մաքսիմ Գորկու անվան դպրոցը...

Նելսոն Ստեփանյանն արգելեց ինձ իր հետ «դուք»-ով խոսել: Այդ բանը ինձ ավելի մտերմացրեց նրան, ու մենք զրուցում էինք, ինչպես հին ընկերներ: Երբ իմացավ, որ շատ եմ սիրում իմ գործը, ասաց.

— Առանց անձնուրաց սիրո, ինչպիսին էլ լինի աշխատանքը, ոչ ոք լավ մասնագետ դառնալ չի կարող, առավելապես՝ լավ օդաչու: Օդաչու լինել՝ նշանակում է լինել անձնազոհ... Եթե վախեցավ՝ գնահատականը զերո է...

Տեսնելով, թե ինչպիսի հափշտակությամբ եմ լսում իրեն, նա շարունակեց. տրամադրությունը լավ էր, ժամանակ էլ ուներ:

— 1941 թ. ամռան վերջերն էր,— սկսեց դրվագներ պատմել իր մարտական գործողություններից,— գրոհային հաջող թռիչքից հետո վերադառնում էի օդանավակայան: Վերևում անամպ ու կապուտակ երկինքն էր, ներքևում՝ անծայր կանաչ հարթությունը: Ֆաշիստները Օդեսայի շրջակայքում ռազմական ամրություններ էին կառուցում: Նոպանոր զորամասեր և տեխնիկա էր, որ կուտակվում էր Օդեսայի մատույցներում: Օդեսայի մոտ ֆաշիստներին կործանիչ հարված հասցրեցին մեր գրոհային խմբերը: Հօդս էին ցնդում զինամթերքի պահեստներ, ավտոշարասյուներ, տանկեր: Գնացքներ էին, որ դուրս էին գալիս շարքից: Մեր ինքնաթիռները գրոհային հաջող թռիչքից հետո իրենց մարտակարգով օդանավակայան էին վերադառնում: Մեկ էլ ներքևում ինչ-որ շարժում նկատեցի: Լարեցի տեսողությունս: Պարզվեց, որ ֆաշիստների հեծելազորն է: Առանց ակնթարթ կորցնելու անցա խուզող թռիչքի... մի քանի մետր բարձրությունից գնդացրային կրակ տեղացի հեծելազորի գլխին: Հեծելազորը մատնվեց անասելի խուճապի: Խրտնած ձիերը փախչում էին այս ու այն կողմ... «Իլ»-երից տեղացող գնդակների տարափը իր փառահեղ գործը տեսավ: Իսկ ինչո՞ւ այս հրաշալի ձիերի երամակը չհասցնել մերոնց, մտածեցի ես ու այդ մասին տեղյակ պահեցի ընկերներիս և հավանության արժանացա: Վարժ ու հմուտ մանևրներով մեզ հաջողվեց խրտնած երամակի կատաղի վազքը ուղղել դեպի մեր ռազմաճակատի գիծը: Վրա հասան մեր բանակայինները, սանձահարեցին երամակն ու տարան զորամաս...

Մեր զրույցն ընդհատվեց. գնդի շտաբի պետը զանգահարեց ու կանչեց նրան: Նելսոն Ստեփանյանն արագ ոտքի կանգնեց և ասաց, որ մարտական թռիչքի հանձնարարություն ստացավ:

— Թույլ տվեք ուղեկցել մինչև ձեր ինքնաթիռը,— ասացի ես:

— Կարելի է, միայն ցավում եմ, որ այսքան շուտ ենք բաժանվում,— ասաց ու թևս վերցնելով, առաջնորդեց ինձ դեպի դուրս:

Մի քանի րոպե անց մենք արդեն ինքնաթիռի մոտ էինք: Խնդրեցի նրան, որ թույլ տա հագցնեմ պարաշյուտը: Նա թույլ տվեց: Մոտենում էր հրաժեշտի վերջին վայրկյանը... Երբ ձեռքս մեկնեցի Նելսոնին հրաժեշտ տալու, նա ձեռքս բռնելու փոխարեն գրկեց ինձ... Գրկախառնվեցինք... Ի՜նչ երջանիկ պահ էր... Երբեք չեմ մոռանա...

— Նիկոլա՛յ ջան, կհանդիպենք, անպայման կհանդիպենք մեր սիրելի Երևանում... Առայժմ պետք է պաշտպանենք Լենինգրադը: Պաշտպանելով Լենինգրադը, մենք Երևանն ենք պաշտպանում... Եթե քեզ հաջողվի ինձանից առաջ Երևան հասնել, հայտնիր բոլորին, որ բանի կրծքիս տակ բաբախում է սիրտս, մինչև արյանս վերջին կաթիլը պաշտպանելու եմ իմ հայրենիքը, բարձր եմ պահելու իմ ժողովրդի պատիվը...

*ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆ*



# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ
*Բանասիրության դոկտոր*

## 13. ԳՐԱԿԱՆ ԼԵԶՈՒ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԼԵԶՈՒ Ի՞ՆՉ ՏԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆ

Մե՛ծ տարբերություն. գրական լեզուն քերականությամբ և բառապաշարով նորմավորված լեզուն է, որի մեջ տեղ չունեն ոչ բարբառները ու ժարգոնը, ոչ էլ քերականական անճիշտ արտահայտությունները: Լեզու, որ պարտադիր է դպրոցում, լրագրում, ռադիոյում, լեզվի հասարակական օգտագործման բոլոր տեղերում:

Մինչդեռ գրականության լեզուն անհամեմատ լայն, ավելի ընդգրկուն երևույթ է, որ իր մեջ է առնում և՛ գրական լեզուն, և՛ բարբառները, և՛ ժարգոնը, և՛ նույնիսկ գռեհկաբանությունները:

Ինչո՞ւ է այդպես:

Այդպես է, որովհետև գրականությունը կյանքի արտացոլումն է, մարդկային ամենատարբեր բնավորությունների արտացոլումը, իսկ ինչպե՞ս կարող է գրողը կերպար ներկայացնել, եթե նրան իր հարազատ լեզվով չխոսեցնի. չէ՞ որ ոչինչ այնպես ստույգ չի բնորոշում մարդուն, որքան իր խոսվածքը, իր լեզուն. գռեհիկ մարդը խոսում է գռեհիկ, քաղքենին՝ քաղքենաբար, գյուղացին իր բարբառով և այլն, և այլն:

Անտոն Չեխովն իր պատմվածքներից մեկում պատկերել է մի կիսակիրթ կնոջ, որ ունի գեղեցիկ խոսելու անդիմադրելի թուլություն: «Дайте мне атмосферу», («Տվե՛ք ինձ մթնոլորտ»),— ասում է նա, և բառի այս ծիծաղելիորեն սխալ գործածությունը նրան բնութագրում է ավելի լավ, քան որևէ հեղինակային նկարագրություն:

Կերպարն իր իսկ խոսքով բնութագրելու այս եղանակը հատկապես տիրապետող է դրամատիկական գրականության մեջ, ուր դա բնավորություն նկարելու միջոցներից ոչ թե մեկն է, այլ միակը:

Լև Տոլստոյի «Խավարի թագավորությունը» դրամայում պատկերված է մի ազնվագույն մարդ՝ նահապետական նկարագրի տեր գեղջուկ Ակիմը: Սա խոսքի սկզբում ու միջում ասում է շարունակ «Тае, тае...», գրական ռուսերենից դուրս բարբառային արտահայտություն, որ հայերեն կլինի՝ «էնիքը, էնիքը...» Ծերունի Ակիմն այդպես է ասում կմկմալով, իր ուզած բառը չըգտնելու պատճառով: Եվ հայտնի դերասան Իգոր Իլյինսկին այնպես է գործի դնում այդ «Тае, тае...»-ն, որ ծերունի Ակիմն իր բնավորությամբ, հոգեբանությամբ, ճշմարտության տանջալի որոնումներով կենդանի կանգնում է առաջդ:

Բարբառն, այսպիսով, որ գրական լեզուն մերժելով մերժում է, տեղ է գտնում գրականության լեզվի մեջ:

Հայ գրականությանը դառնանք: Մի կողմ թողնենք Գաբրիել Սունդուկյանին, որ իր բոլոր պիեսները, մեկի բացառությամբ, գրել է թիֆլիսահայ բարբառով (թե ինչո՞ւ, դա մի առանձին ու շատ հետաքրքիր զրույցի նյութ է): Զննենք Ալ. Շիրվանզադեի «Պատվի համար»



## Ծառի խնդրանքը

ԳԱՍՏՎԱԿԱՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Մի՛ կոտրատեք իմ ճյուղերը՝
Իմ մատներն ու իմ թևերը,
Տերև անգամ մի՛ պոկոտեք,
Որ ինձ խոր ցավ չպատճառեք...

Թողեք սփռեմ ես հով ու զով,
Կեղտ ու փոշուց մաքրեմ օդը,
Կանա՜չ, կանա՜չ իմ ձեռքերով
Ցրեմ ամռան կիզիչ տոթը:

Միտ ու ծիծաղ առնեմ ուսիս,
Օրոր ասեմ ես օրնիբուն
Եվ ամենուր ձեր ճամփեզրին
Սփռեմ կանաչ գեղեցկություն:

դրաման, որը ևս, ինչպես հեղինակի մյուս բոլոր պիեսները, գրված է մաքուր գրական լեզվով: Այս դրամայում, սակայն կա մի կերպար, որ խոսում է բարբառով: Դա Վարդանն է, որ նոր է եկել գավառից ու դարձել է մեծահարուստի տան ծառան: Լսելով, թե իր տիրուհին ինչքան փող է տվել մի գլխարկ գնելու համար՝ նա ապուշ է կտրում զարմանքից. «Վա՜յ սատանա փռնոդաց Վարդան, ինըսուն մանեթով Շամախիում մի տուն կարելի ա շինել... Հալա կտուրն ալ ղռած...» Անա բարբառային մի դարձվածք, որով հեղինակը ցայտուն պատկերացում է տվել գավառին նոր միայն հրաժեշտ տված Վարդանի մասին:

Շիրվանզադեն, որ շամախեցի էր, հիանալի գիտեր ծննդավայրի բարբառը, այդ լեզվով կգրե՞ր իր վեպերը: Ո՛չ մի դեպքում: Նրա հեղինակային լեզուն գրական հայերենն է:

Այստեղ է, որ պետք է շեշտենք՝ հեղինակային լեզուն չի կարելի շփոթել կերպարային լեզվի հետ: Մինչդեռ շատ հաճախ մարդիկ շփոթում են՝ տեղիք տալով տխուր թյուրիմացությունների:

Դրա օրինակն է Հովհաննես Թումանյանի ստեղծագործության ընկալումը: Կան մարդիկ, որ հեղինակային ու կերպարային լեզուները շփոթելու հետևանքով նրան համարում են բարբառագիր հեղինակ: Մինչդեռ, եթե նույնիսկ մի կողմ դնենք Թումանյանի «Դեպի անհունը», «Փարվանան», «Թմկաբերդի առումը», մի պահ մոռանանք «Գիքորն» ու քառյակները, վերջապես մեծաթիվ հոդվածները, և իր ամենաբարբառագիր գրվածքը՝ «Հառաչանք» պոեմը զննենք, դարձյալ այդպիսի եզրակացության գալ չի կարելի:

Եվ ահա թե ինչու:

«Հառաչանք» պոեմում ևս, ինչպես «Անուշում» հեղինակն իր կողմից խոսում է գրական լեզվով, մինչդեռ իր հերոսներին խոսեցնում է բարբառախառն լեզվով: Ու քանի որ «Հառաչանքն» այլ բան չէ, քան բովանդակ կյանքը («չորս քսան տարին») Լոռու ձորերում անցկացրած ծերունու մենախոսությունը՝ գրեթե ամբողջ պոեմը գրված է այդ լեզվով: Այլապես Թումանյանը դավաճանած կլիներ կյանքի, ուրեմն նաև արվեստի ճշմարտությանը: Եթե ծերունին գազեթի փոխարեն լրագիր ասեր, պիսերի փոխարեն՝ գրագիր և այլն, ապա կեղծիք կմտներ գրվածքի մեջ, կավերվեր հանճարեղորեն պատկերված կերպարն իր այսպիսի անկրկնելիորեն ինքնատիպ ընդհանրացումներով. «Մեր ապրուստն ի՞նչ է.— մի կտոր չոր հաց, էն էլ հըրեն հա՛ — երկնքից կախված. Մի մարդ որ նըրա երեսը պահի՝ Նըրա ապրուստը ի՞նչ պետք է լինի...» Նկատենք՝ նաև, որ ծերունու այս և ուրիշ խոսքեր լիակատար բարբառով չեն գրված, այլ երանգավորված են բարբառով:

Մինչդեռ, իր կողմից խոսելիս, հեղինակը գրել է. «Մի քանի տարի սրանից առաջ, Երբ որ հայրենիք էի ես գնում, Այն մըթին ձորում, ուր որ քաղցրավաչ Մեղեդու ձայնով Դեբեդն է վազում...» Պատկերացրեք, թե ինչ անբնական կլիներ, եթե ծերունին ևս այս լեզվով խոսեր...

Ճիշտ այդպես էլ մեկ ուրիշ գրողի երկում հերոսները կարող են խոսել ժարգոնով կամ գռեհկաբանություններով, բայց դա պատճառ չպիտի լինի հեղինակին ժարգոնագիր կամ գռեհկաբան կոչելու համար:

Եվ այսպես, կարող ենք եզրակացնել՝ հեղինակային լեզուն նույնը չէ, ինչ կերպարային լեզուն, գրական լեզուն նույնը չէ, ինչ գրականության լեզուն: Վերջինս՝ գրականության լեզուն, իր մեջ է առնում և՛ բարբառները, և՛ ժարգոնները, և՛ օտարաբանությունները, և՛ գռեհկաբանությունները, և՛ դիպվածաբանությունները և այլն:

Ճիշտ է, սրանք դուրս են մնում գրական լեզվից, բայց դա չի նշանակում, թե դրանցից որևէ մեկն արժանի է արհամարհանքի կամ անկարևոր են թեկուզև գրական լեզվի հետ ունեցած հարաբերության մեջ, կամ էլ՝ չունեն նրա մեջ թափանցելու հնարանկար:

Բոլորն էլ կարևոր են իրենց տեղում և իրենց չափով:

Դրան էլ նվիրված կլինեն մեր հաջորդ զրույցներից մի քանիսը:

## Ժայռն ու հողը

ՄՅԱՍՆԻԿ ԼԱԳՋՅԱՆ

Ժայռի մի ծերպին հող էր հավաքվել,
Եվ ամեն գարուն այդ մի բուռ հողում
Ճերմակ թերթերով ծաղիկ էր ծաղկում
Ու շուրջը անուշ բուրմունք տարածում:

Եվ ամեն գարնան այդ մի բուռ հողից
Ելնում, բուրում էր ի՜նչ գեղեցկություն,
Գերվելով ճերմակ ծաղկի բուրմունքով՝
Հաճախ էր նրան հյուր գալիս մեղուն...

Նայում էր ժայռը այդ մի բուռ հողին.
Նախանձն էր կրծում նրա սիրտը քար.
— Լավ է,— ասում էր հարևան ժայռին,—
Մի բուռ հող լինել, քան մի հսկա ժայռ...



ՍԱՄՊՆ ԳՈՄԻՆԻ
(Ֆրանսիացի գրող)

# ՏԵՍՈՒՉԸ



Նկ. Գայանե Միքայելյանի

Ուսուցչուհին այսօր դասարան մտավ շատ հուզված և այլայլված.

— Պարոն տեսուչը բարեհաճել է այցելել մեզ,— ասաց նա:— Ես հուսով եմ, որ դուք ձեզ կպահեք ինչպես հարկն է և լավ տպավորություն կթողնեք:

Ապա ուսուցչուհին մեզ ասաց, որ դա այն ծեր տեսուչը չէ, որը գիտեր, թե մենք ինչ պտուղներ ենք, նոր տեսուչ է: Ապա ուսուցչուհին մեզ արգելեց առանց թույլտվության խոսել, ծիծաղել, ծամած թուղթ շպրտել, որից նախկին տեսուչը սայթաքեց: Ալցեստին ասաց, որ դասարանում տեսչի ներկայությամբ ոչինչ չուտի, իսկ Կլոտերին, որը ծույլ է և ամենավատ սովորողը, ասաց, որ հանգիստ նստի և տեսչի աչքին չերևա: Իհարկե, մենք ամեն ինչ խոստացանք մեր ուսուցչուհուն: Նա զննեց հատակը, աշակերտներին և ասաց, որ դասարանը թերևս ավելի մաքուր է, քան մեզանից ոմանք: Ապա նա Անյանին՝ դասարանի ամենալավ սովորող և ուսուցչուհու սիրելի աշակերտին ասաց, որ թանաքամանները թանաք լցնի, թե չէ՝ պարոն տեսուչը հանկարծ կարող է մեզ թելադրություն տալ: Անյանը մեծ շիշը վերցրեց և սկսեց լցնել առաջին նստարանի թանաքամանները, որտեղ նստած էին Միրիլը և Ժոաշենը: Բայց այդ պահին մեկը հանկարծ բղավեց. «Տեսո՜ւչը»: Անյանը այնպես ցնցվեց, որ թանաքը թափվեց նստարանին: Բայց պարզվեց, որ բղավողը դիտմամբ է եղել, որովհետև տեսուչը չերևաց: Ուսուցչուհին բարկացավ:

— Կլոտե՛ր,— ասաց նա,— նորի՞ց սկսեցիր քո հիմար կատակները: Անկյո՛ւն կանգնիր:

Կլոտերն ասաց, որ եթե ինքը անկյուն կանգնի, ապա իսկույն աչքի կընկնի, տեսուչը իրեն կնկատի և այլևս ձեռ չի քաշի, և որ ինքը բոլորովին էլ կատակ չարեց, այլ՝ ճիշտ ասաց, ինքն իր աչքով պատուհանից տեսավ, որ դիրեկտորը մի անծանոթ մարդու հետ դպրոց մտավ և դա հաստատ տեսուչը կլինի: Ուսուցչուհին ասաց, որ այս անգամ ներում է, Կլոտերը կարող է նստել իր տեղը, բայց թանաքոտ նստարանը պետք է դնեն ամենավերջին շարքում, որ չերևա: Մենք բոլորս նստած տեղից վեր թռանք և սկսեցինք նստարանները տեղից շարժել, բայց այդ ժամանակ տեսուչը դիրեկտորի հետ ներս մտավ, և մենք վեր կենալու կարիք չունեցանք, արդեն ոտքի վրա էինք:

— Սա կրտսեր դասարանն է,— ասաց դիրեկտորը, և նրա հայացքը սարսափելի դարձավ,— սրանք, գիտեք, դեռ այնքան էլ...

— Երեխանե՛ր, նստեցե՛ք,— ասաց տեսուչը:

Նստեցինք, միայն թե Միրիլի և Ժոաշենի թիկունքները գրատախտակին էին նայում, որովհետև նրանց նստարանը շուռ էինք տվել:

— Նրանք մի՞շտ այսպես են նստում,— հարցրեց տեսուչը ուսուցչուհուն:

Ուսուցչուհու դեմքին այնպիսի արտահայտություն երևաց, ինչպես Կլոտերինը, երբ սա դասը չի իմանում: Ուսուցչուհին ասաց.

— Գիտեք ինչ, այստեղ թյուրիմացություն տեղի ունեցավ...

Տեսուչը մռայլվեց ու ասաց.

— Ավելի՛ շատ հեղինակություն: Հապա՛, երեխանե՛ր, նստարանը շո՛ւռ տվեք:

Միրիլն ու Ժոաշենն ուղղեցին նստարանը:

Տեսուչը ժպտաց, ափերով հենվեց նստարանին և հարցրեց.

— Հապա՛, ասացե՛ք: Իմ գալուց առաջ ինչո՞վ էիք զբաղված:

— Նստարաններ էինք տեղափոխում,— ասաց Միրիլը:

— Բավակա՞ն է խոսեք նստարանի մասին,— բղավեց տեսուչը:— Ի դեպ, ինչու՞ էիք տեղափոխում:

— Վրան թանաք էր թափվել,— դարձյալ ասաց Միրիլը:

Տեսուչը նայեց իր ափերին և բարձրացնելով թափահարեց, որովհետև բոլորովին կապտել էին:

— Ակներև է, որ դասարանի կարգապահությունը կաղում է,— ուսուցչուհուն ասաց տեսուչը և թաշկինակով սրբեց ձեռքերը:— Ավելի՛ շատ կիրառական հոգեբանություն:

— Երեխանե՛ր,— դարձավ մեզ և նորից ժպտաց,— ինձանից վախենալու կարիք չկա, քանզի ես ձեր բարեկամն եմ: Դուք սիրո՞ւմ եք ուրախանալ: Ես ինքս էլ ծիծաղելուն դեմ չեմ: Դուք գիտե՞ք երկու խուլի պատմությունը: Մի խուլ հանդիպում է մեկ ուրիշ խուլի և հարցնում. «Ձկնորսությա՞ն ես գնում», իսկ մյուսը պատասխանում է. «Ո՛չ, ձկնորսության եմ գնում»: «Այ թե ի՞նչ»— ասում է առաջինը,— ես էլ կարծեցի, թե ձկնորսության ես գնում»:

Ափսոս, որ ուսուցչուհին մեզ թույլ չէր տալիս ծիծաղել, թե չէ, տեսուչի պատմածն այնքան ծիծաղելի էր, որ մենք բոլորս էլ կհռհռայինք: Երեկոյան անպայման կպատմեմ հայրիկին, համոզված եմ, որ նա չի լսել: Մայրիկը՝ նույնպես: Եվ քանի որ տեսուչը ոչ ոքից թույլտվություն խնդրելու կարիք չուներ, մենակ ու երկա՜ր-երկա՜ր ծիծաղեց:

— Դե լավ,— վերջապես ասաց նա,— զվարճությունը՝ զվարճություն, գործն էլ՝ գործ: Այսօր ձեր դասը ո՞րն է:

— Առակներ ենք անցնում,— ասաց ուսուցչուհին:— «Ագռավն ու աղվեսն» է:

— Հիանալի է, շարունակեցե՛ք:

Ուսուցչուհին նայեց դասամատյանին, երկար որոնեց և վերջապես, Անյային կանչեց առակը պատմելու:

— Թույլ տվեք,— խնդրեց տեսուչը:— Ես կցանկանայի, որպեսզի մեկ ուրիշ աշակերտ առակը կարդար:

Եվ նա ցույց տվեց Կլոտերին: Կլոտերը բերանը բացեց և լաց եղավ:

— Ի՞նչ պատահեց նրան,— հարցրեց տեսուչը:

Ուսուցչուհին ասաց, թե Կլոտերին պետք է ներել, որովհետև շատ վեհերոտ և ամաչկոտ է: Դրանից հետո տեսուչը Ռյուֆյուին ցույց տըվեց: Ռյուֆյուն պատասխանեց, թե ինքը առակը անգիր չի հիշում, բայց ընդհանուր գծերով գիտի, թե ինչի մասին է: Եվ նա սկսեց պատմել, թե ագռավն ինչպես է բերանը մի կտոր ռոկֆոր պանիր առնում:

— Ռոկֆո՞ր,— զարմացավ տեսուչը:

— Դե չէ,— ուղղեց Ալցեստը,— դա կամամբեր է լինում:

— Ի՛նչ կամամբեր,— առարկեց Ռյուֆյուն:— Ագռավը կամամբեր չի վերցնի բերանը: Կամամբերը գարշահոտ պանիր է:

— Ճիշտ է, վատ հոտ ունի, բայց շատ համեղ է,— ասաց Ալցեստը:— Այ, օճառը լավ հոտ ունի, բայց անհամ է, մի անգամ փորձել եմ:

Ռյուֆյուն ասաց, թե Ալցեստը հիմար է, իր հորը կասի, որ նա Ալցեստի հայրիկին տուգանի սխալ կանգառի համար: Եվ նրանք կռվեցին:

Մենք բոլորս, բացի Կլոտերից, որը իր անկյունում նստած լալիս էր, և Անյայից, որը գրատախտակի մոտ արտասանում էր Լաֆոնտենի «Ագռավն ու աղվեսը», տեղներիցս վեր թռանք և գոռգոռացինք: Իսկ դիրեկտորը, տեսուչը և ուսուցչուհին բղավում էին. «Վե՛րջ տվեք»:

Երբ բոլորս նստեցինք, տեսուչը գրպանից դուրս քաշեց թաշկինակը և սրբեց դեմքը, որն ամբողջովին կապտեց: Ափսոս, որ չէր կարելի ծիծաղել, և ստիպված եղանք համբերել մինչև դասամիջոցը:

Տեսուչը մոտեցավ ուսուցչուհուն և սեղմեց նրա ձեռքը:

— Օրիո՛րդ, ես շատ հուզված եմ,— ասաց նա:— Այսօր, ինչպես երբեք, զգացի, թե ձեր մասնագիտությունը որքա՜ն մեծ անձնազոհություն է պահանջում: Շնորհավորում եմ ձեզ:

Եվ մենք շատ ուրախ էինք մեր ուսուցչուհու համար, որովհետև մեր պատճառով նրան գովեցին, բայց չգիտես ինչու, նա դասերից հետո լըքեց մեզ: Անարդարացի է, ճի՞շտ է:

Թարգմ. ԴԵՐԵՆԻԿ ՍԱՐԻԲԵԿՅԱՆԻ

*Գիտե՞ք, որ...*

## ՁԵՐ ԲԱՐԵԿԱՄ ՀԵՌԱԽՈՍԸ

Մարդու ձայնի պարզունակ «ուժեղացուցիչ» լինելուց, ինչպիսին էր հեռախոսն իր ստեղծման պահին՝ մոտ 100 տարի առաջ, այն ավելի ու ավելի բարդանալով, աստիճանաբար դառնում է մեր պատրաստակամ և հոգատար բարեկամը: Փոքրածավալ կոմպյուտերի հետ միացված հեռախոսը ոչ հեռավոր ապագայում կկարողանա փրկել այնպիսի դրություններից, որոնք այժմ ձեզ փակուղու առաջ են կանգնեցնում: Դիցուք, երեկոյան հյուր եք հրավիրված, սակայն միաժամանակ սպասում եք չափազանց կարևոր հեռախոսազանգի: Այժմ ճարահատյալ հրաժարվում եք հրավերից: Իսկ մոտ ապագայում նման դեպքերը ոչ մի դժվարություն չեն ներկայացնի: Պարզապես տանից դուրս գալիս վերցրեք ձեր հեռախոսի լսափողը, սեղմեք «ավտոմատ փոխանցում» ցուցատախտակի կոճակը և հավաքեք ձեր բարեկամի հեռախոսի համարը: Դրանից հետո ձեր հեռախոսի համարով եկող բոլոր զանգերը կփոխանցվեն ձեր բարեկամի հեռախոսին: Կամ ընդհակառակը, ասենք, ինքներդ եք ուզում հյուրեր ընդունել և ցանկանում եք հրավիրվածների հետ պայմանավորվել բոլորին հարմար ժամի վերաբերյալ: Ձեր հեռախոսն հնարավորություն կտա միաժամանակ կապվել բոլոր հրավիրվածների հետ և կազատի բազմաթիվ անգամներ զանգահարելու և վերազանգահարելու հոգնեցուցիչ պարտականությունից: Ինչքա՞ն ենք մենք հրաժարվում զանգահարելու մտքից, երբ մեզ անհրաժեշտ հեռախոսը երկար ժամանակ անընդհատ զբաղված է լինում: Այստեղ էլ մեզ օգնության կհասնի մեր փորձված բարեկամը՝ հեռախոսը: Նա ձեր փոխարեն ավտոմատորեն կսկսի զանգահարել անհրաժեշտ համարով և նույնիսկ կզգուշացնի ձեր բարեկամին, որ դուք ցանկանում եք խոսել նրա հետ:

Ապրելը դժվար բան է առհասարակ, եթե, իհարկե, ապրում ես ազնիվ, արժանապատվորեն, մաքառելով, նվիրաբերվելով: Առավել դժվար է, երբ այդ կյանքը շարունակվում է 90 տարուց ավելի, շարունակվում է բուռն, նույն երիտասարդական թափ ու ավյունով: Ահա այդ առավել դժվար կյանքով է ապրել Մարիետա Շահինյանը՝ համընդհանուր համբավի հասած գրողն ու հրապարակախոսը, անդադրում պայքարողն ու քաղաքացին: Մարիետա Շահինյանը արտակարգ մի երևույթ է, արտակարգ մի անձնավորություն՝ ներկայումս ապրող գրողների ու ներկա գրականության մեջ, ու մենք նրա հայրենակիցներս հպարտ ենք, որ մեր ժողովուրդն է եղել նրան ծնողն ու սնողը, որ հանձին Մարիետա Շահինյանի մի ազգանուն էլ է ավելանում ընդհանուր հարգանքին ու գնահատականին արժանացած մեծերի անվանացանկում: Ես ուրախ եմ, որ Երևանում հրատարակվող Մարիետա Շահինյանի միհատորյակի համար առիթը ունեմ թարգմանելու նրա վաղ տարիքում գրված բանաստեղծությունները: Սիրով «Պիոների» պատանի ընթերցողների ուշադրությանն եմ հանձնում այդ թարգմանություններից մի քանիսը:

*ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ*



# ԱՌ ՀԱՅԱՍՏԱՆ

Մի լույս բերկրությամբ անիմանալի,
Փնտրելով միայն աղոթք ու անդորր,
Մրմունջն եմ հիշում քո սուրբ վանքերի,
Իմ լո՜ւյս հայրենիք, իմ լո՜ւյս հեռավոր:

Հիշում եմ անվերջ, այրող մի ցավով,
Ինչպես որ դեմքը սիրելի մարդու,
Քո դաշտն ու գետը, լեռները քո մով,
Անուշ բույրերը քո մարգ ու այգու:

Ինչ-որ մի թաքուն ուժի հնազանդ,
Իմ ունկերը դեռ պահում են ներսում,
Խոր փայփայում են քո պարզ, հնավանդ,
Քո հանդիսավոր, թախծալուր լեզուն:

Կարոտի, ցավի անել պահերին,
Որպես վերջին դուռ, վերջին ապաստան,
Ապաբախտ դուստրդ գալիս է նորից
Կրծքիդ փարելու, մա՜յր իմ Հայաստան:

Գիտեմ, գազանը՝ զարկված սրտից
Նորից իր բույնն է դառնում սողեսող,
Վիրավոր եմ ես հյուսիսցու նետից,
Ինձ բուժո՛ղ եղիր, հայրենի՜ իմ հող:

1912 թ.

# ՆՎԻՐՈՂԻՆ

Ինչպես մանուկներ՝ վերմակների տակ
Ծաղկաբաժակում սերմերն են քնել,
Նյութել է նրանց մութը անհատակ,
Լույսի համար է փայփայել, սնել:

Քնել են նրանք: Բայց ժամը կգա
Ծաղկաբաժակը կբացվի լրին,
Մանուկ սերմերը կթափվեն հողին
Ու տխրած հողը խինդով կխայտա:

Սի՛րտ իմ, շռա՛յլ իմ, իմ լցվա՛ծ ծաղիկ,
Սուրբ է կորուստդ, բաշխի՛ր լիառատ,
Բախտ է ստանալ բերկրանք ու բարիք,
Սակայն բաշխելը առավել է բախտ:

1915 թ.

# ԱՆԿԱՐՈՂԻՆ

Երեր են մանկան քայլերն առաջին,
Կանգնած է ու դեռ քայլել չի կարող,
Բայց մայրը՝ բացած գիրկը գուրգուրող
Կանչում, քայլել է տալիս մանկիկին:
Անցնում են տարիք: Ժամանակը մեզ
Օգնում է կյանքը փորձով հասկանալ,
Մոր կանչող ձեռք է նպատակը մեծ,
Նա ստիպում է քայլել կարենալ:

1915 թ.

# ԴԵՊԻ ԱՆՀԱՅՏ ԱՇԽԱՐՀԱՄԱՍԵՐ...

*ՌԱՖԱՅԵԼ ՂԱԶԱՆՉՅԱՆ*

Աբելը նախ ինքը զարմացավ իր հետ կատարված հանկարծակի փոփոխության վրա: Խոսքն այն մասին չէ, թե Աբելը, կախարդական գավազանի շնորհիվ, հեքիաթային զորությամբ, ճշտորեն, անգամ աչքերը փակ, սկսեց կողմնորոշվել աշխարհի քարտեզի կիսագնդերի վրա: Նա առաջվա պես երկար ցուցափայտով դեգերում էր աշխարհում, Նիագարայի ջրվեժը փնտրում Հնդկաստանում, Կուրիլյան կղզիները՝ աֆրիկյան ջունգլիներում: Հյուսիսային սառուցյալ բևեռում էր փնտրում Գոբի անապատն ու հարավամերիկյան փամփասների բնակատեղին: Չէ՛, ցուցափայտը բոլորովին էլ կախարդական գավազան չէր, և նրա լայն բացված աչքերի դեմ դասամատյանում կրկին ու կրկին «3»-ներ էին հայտնըվում, երբեմն էլ օձագլուխ «2»-ներ:

Ուրեմն, զարմանալին այն էր, որ հանկարծակի Աբելի հասակը վեր ձգվեց ու հասավ մեկ մետր հիսունհինգ սանտիմետրի: Չկա չարիք, առանց բարիքի,— մտածեց Աբելը, գուցե արդեն անվիճելիորեն բասկետբոլի մրցումներում իր կայուն տեղը կունենա հակառակորդի ցանցազամբյուղի տակ: «Երկար հասակը դեռ ոչինչ չի նշանակում,— թերահավատորեն կասի մարզիչը,— արագությունն ու ճկունությունն են կարևորը...» Գոնե դեռևս Աբելին թողնեն նախկին պաշտպանական գծում, բայց դասասենյակում նրա տեղը հաստատորեն փոխվեց...

Հիմա խոսքը կգնա «չարիքի» ու «բարիքի» մասին:

Աշակերտները ուշադիր ու լուռ լսում են դասը: Աշխարհագրության դասատուն՝ ընկեր Համբարձումյանը պատմում է մերձարևադարձային գոտու տեղանքի, փարթամ բուսականության ու կենդանական զարմանահրաշ աշխարհի մասին: Նա հետաքրքիր դեպքեր է հիշատակում տեղի բնիկների կյանքից ու աշակերտներին մեկընդմեջ հարցնում է, թե ինչ գիրք են կարդացել կամ ի՞նչ կինոնկար են դիտել մերձարևադարձային գոտու երկրների ու բնակչության թեմայով:

Ջուսպ ու սակավաբառ է աշխարհագրության ուսուցիչը, բայց նրա ժլատ խոսքից աշակերտները այնպես էին պատկերացնում մերձարևադարձային երկրները, որ թվում էր, հիմա, ուր որ է մի-մի Կոլումբոս կդառնան և արևածաղկի սերմ կնպելու պես հեշտ մի-մի նոր, անհայտ աշխարհամասեր կըհայտնաբերեն:

Բոլորն ուզում էին նայել գրատախտակից կախված քարտեզին: Բայց արի ու տես, որ Աբելը խանգարում էր հետևի նստածներին: Աբելն ինքը մեղավոր չէր, որ հետևի նստարանների նստածները ստիպված էին պարանոցները ընձուղտի պես երկարել՝ քարտեզին նայելու համար: Նրանց հայացքները դեմ էին առնում Աբելի թիկունքին: Իսկ եթե Աբելի մոտով անցներ ձեռք բարձրացնե՞լ... կթվար, ուզում է առաստաղից կախված ջահը պոկել:

Առջևի նստարանին հանգիստ տեղավորված Արամի ձեռքը անընդհատ վերուվար էր անում: Ուսուցիչը նկատեց և ձայն տվեց նրան:

Արամը բարձրացավ տեղից ու շփոթված ասաց.

— Ես ձեռք չեմ բարձրացրել...

Դասարանը չկարողացավ ծիծաղը զսպել:

— Լա՛վ, նստի՛ր — ասաց ուսուցիչը:

Քիչ անց նույնը կատարվեց Արամի կողքին նստած Անահիտի հետ:



*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*

Ծիծաղի նոր ալիք բարձրացավ:

Ձեռքեր էին, որ պարզվում էին վեր:

Ուսուցիչը կրկին ձայնը տվեց Արամին:

Արամը շփոթված ելավ տեղից ու կմկմաց.

— Իմ ձեռքը չէր:

— Հետաքրքիր է,— ժպտաց ուսուցիչը,— կարո՞ղ ես ասել, թե քո ուսից ո՞ւմ ձեռքն է ելնում:

— Աբելի,— միամտորեն պատասխանեց Արամն, ու դասարանով մեկ քրքիջ բարձրացավ:

— Լռությո՛ւն,— ձայնը բարձրացրեց ուսուցիչը,— Անահի՛տ, դու ձայն էիր խնդրել:

— Ո՛չ, Աբելն էր:

Աշխարհագրության ուսուցիչը՝ ընկեր Համբարձումյանը ցուցափայտը պարզեց դասասենյակի անկյունի թափուր նստարանի կողմը:

— Անցիր Հյուսիսայի՛ն բևեռ,— ասաց նա Աբելին:

Աբելի նիհար ու երկար կերպարանքը ուղևորվում է դեպի «Հյուսիսային բևեռ»: Այդ «աքսորավայրում» Աբելն իրեն այնքան էլ վատ չէր զգում: Ախր, մյուս՝ «Հարավի» նստարանին շատ էր նեղվում խեղճ երկարահասակը: Ոտքերը դուրս էին մնում, արմունկները թե հենում էր սեղանին, նմանվում էր նժույգի ականջը մտած հեծյալի, նաև երկնասլաց աշտարակի պես փակում էր մյուսների տեսադաշտը:

«Հյուսիսային բևեռում» Աբելն իրեն լավ էր զգում, ու երբ հարկ էր լինում ձեռք բարձրացնել, թվում էր, թե... չափ է տալիս դասարանի բրքիջին:

Ինչպես ասում են, երբ մարդու անունը դուրս է գալիս, շատ դժվար է այն կրկին իր իսկական տեղը գցելը: Մի սուլոց լսվեր, Աբելն է, մի թղթե ճնճղուկ ճախրեր, Աբելն է, մի գիրք նախշազարդվեր, Աբելն է, աղմուկ լսվեր, ուրեմն «Հյուսիսային բևեռից» է... Աբելն է, քանի որ սիրուն աչքերի ու բարձր գնահատականների համար չեն «աքսորում» «Հյուսիսային բևեռ»: «Հյուսիսից» մինչև գրատախտակի մոտ էր հասնում, շատ անգամ մտքերից թռչում էին պատասխանները, սկսում էր ճոճվող աշտարակի պես երերալ գրատախտակի մոտ:

— Վաղը աշխարհագրական թեմայով մրցույթ ենք անցկացնելու,— ասաց ուսուցիչը,— պատրաստվեք: Թեման՝ «Ինչպե՞ս եք ճանաչում երկրագունդը»: Հաղթողն իրավունք կստանա մասնակցելու շրջանային ու համաքաղաքային մրցույթին:

Մրցույթի եռուն պահերն էին: Դասասենյակը իր պատերի ներսում տեղավորել էր բոլոր աշխարհամասերը, աշխարհամասերի լեռնաշղթաներն ու դաշտավայրերը, օվկիանոսներն ու լճերը, գետերն ու մարգագետինները, բուսական և կենդանական աշխարհը, հավերժական սառույցների ու հավերժական արևների գոտիները... աշխարհը:

Մրցակիցները մոտենում էին քարտեզներին, ցուցափեղկերին, որոնց պահպանության ներքո էին գտնվում զանազան կենդանիների խրտվիլակներ, ակվարիումներին՝ բազմապիսի ձկնատեսակներով, ծաղկամաններին՝ գույնզգույն ծաղիկներով, անոթներին՝ մեջները սողուններ ու միջատներ...

Ոչ ոք չէր նկատում Ծլլիկին: «Հյուսիսային բևեռում» նա երկտակվել էր իր առաջադրանքի վրա ու, թվում էր, հեծյալը նժույգի ականջը մտած սլանում է աշխարհից աշխարհ:

Իսկ աշխարհում այնքա՜ն անհայտ վայրեր կան, որ պետք է հայտնաբերել:

...Ուշ երեկոյան ավարտվեց մրցույթը: Առավոտյան միայն կարող էին իմանալ հաղթողի անունը, և նրան էր պատկանելու մրցանակ գավաթը: Մեկը չկար, որ անհամբերությամբ չսպասեր վճռական պահին: Յուրաքանչյուրի մտքում իր անունն էր:

Ներկա չէր միայն երկայնահասակ Աբելը:

Նրան հիշող էլ չկար:

Ահա և բացվեց դասասենյակի դուռը, և բոլորը շտապելով ներս մտան: Ուսուցիչը հապաղում էր: Նա խորհրդավոր ժպտում էր ու նայում աշակերտների զարմացած դեմքերին:

Անձայն ու խորհրդավոր, ցուցափայտը՝ կախարդական գավազանի պես պտույտ գործեց օդում և ուղղվեց անկյունի նստարանին: Ոմանք նույնիսկ թաթերի վրա բարձրացան՝ տեսնելու, թե ինչ կա այնտեղ: Գավաթը գտնվում էր ոչ այլ տեղ, քան «Հյուսիսային բևեռում»:

Քիչ անց դռների մեջ երևաց ինքը՝ երկայնահասակ Աբելը: Նա մի տեսակ ամաչում էր, քանի որ այդ օրն ավելի էր երկարել հասակը, ու տաբատի փողքերը ավելի վեր էին մնացել, պիջակի թևքերը կարճացել էին ու վերնաշապիկի օձիքը խեղդում էր նրան:

Գնաց ու... կանգնած մնաց իր նստարանի մոտ:

Նա իրոք շատ էր նման աշտարակի: Գավաթը երկու ձեռքով բարձրացրեց ու սառավ մնաց, թվում էր, ուր որ է աշտարակը կերերա, կերերա ու կտապալվի: Քիթն ու ականջներն էլ, ոտք ու ձեռքի հետ երկարել էին, իսկ երկարուկ կոշիկներն ասես նավակներ լինեին, որ դուրս էին եկել բաց ծով ու լողում էին դեպի անհայտ աշխարհամասեր...



# ԱՐԱՐՈՒՄ

«Կշարունակի աճել... Մանգիշլակի տարածքաարդյունաբերական համալիրը»:

ՍՍՀՄ ժողտնտեսության զարգացման 1976—80 թվականների հիմնական ուղղություններից:

Հազարավոր տարիներ Կասպից ծովի ժայռոտ ափերին գոյություն ուներ անապատի վերածված Մանգիշլակ թերակղզին: Երեք հարյուր կիլոմետր երկարություն ունեցող ծովափը երկու հակադրությունների մեջ էր ապրում. մի կողմից ծովի ալիքն էր բախվում ափերին, մյուս կողմից՝ անապատի ավազը:

Թերակղզու առաջին այցելուներն այսպես են նկարագրել տեղանքը. «...Միայն քար ու ավազ... Գոնե մի կանաչ ծիլ կամ ճյուղ երևար: Սատանան գիտե, թե ինչ երկիր է...» Այս տողերը ուղիղ տասնութ տարի առաջ են գրվել: Այն ժամանակ իսկապես չկար ոչ միայն ծիլ ու թուփ, այլև ամենակարևորը՝ ջուր, առանց որի մարդիկ չէին կարող աշխատել: Իսկ աշխատել պետք էր, որովհետև մարդիկ՝ անհանգիստ, պրպտող մարդիկ այստեղ նավթի, գազի ու այլ հանածոների հսկայական պաշար էին հայտնաբերել: Երեք տարվա ընթացքում այրող արևի, չոր անապատի ու առանց բընական ջրի, երիտասարդ կոմերիտականները, բարձր որակավորում ունեցող մասնագետները նավթի առաջին աշտարակները կանգնեցրին ու տները կառուցեցին:

Առաջին հատուկենտ աշտարակները վերածվեցին նավթամուղների անտառի: Կառուցվեցին նավթավերամշակման, գազավերամշակման ու այլ գործարաններ: Արագացված նեյտրոնների սկզբունքով աշխատող աշխարհում առաջին ատոմային էլեկտրակայանը այստեղ կառուցվեց: Քաղաքն էլ օրըստօրե ընդարձակվում, գեղեցկանում էր նոր երկնաքերներով, գերժամանակակից կառույցներով ու ձևավորումներով:

Թվում է, թե տասնհինգ տարին առանձնապես մեծ բան չէ: Անգամ հին և ունևոր շրջանները այդքան ժամանակում հազիվ հասցնում են կիսով չափ ավելացնել իրենց արտադրությունը, բնակչության թիվն ու մնացած ցուցանիշները, իսկ այստեղ ամեն ինչ միանգամից, ավելի ճիշտը, մի խարխուլ տնակից ու հին գերեզմանոցից սկիզբ առած ավանն այժմ մարզային կենտրոն է դարձել և մկրտվել է Շևչենկոյի անվամբ:

Ամեն ինչ լավ էր, հրաշալի էր, բայց չկար ամենակարևորը՝ ջուրը: Այն բերում էին Աստրախանից՝ տանկերներով, որը հաճույքով չէր խմվում: Գիտնականների առջև վաղուց խնդիր էր դրված ապագա արդյունաբերական հզոր քաղաքն ապահովել խմելու ջրով: Նախագծերը կազմվում, պայմանները քննարկվում էին, բայց ոչ մեկը՝ անգամ Վոլգայից ծովով ջրատար խողովակներ անցկացնելը, գործնականում կիրառելի չէր: Հարց դրվեց Ամու-Դարյայից անապատով ջրատար խողովակաշար անցկացնել: Բայց Արալյան ծովի (ուր թափվում է Ամու-Դարյան) ջրային ռեժիմը առանց այդ էլ վաղուց էր խախտվել: Որոնումները շարունակվեցին և իզուր չանցան: Հարցը համարձակ լուծում ստացավ: Ծովի ջուրը վերամշակել նոր եղանակով և խառնել նույնքան նոր եղանակով մշակված արտեզյան ջրերին:

Փորձնական աշխատանքները փայլուն արդյունք տվին այդ հայտնագործությունը լենինյան մրցանակի արժանացավ:

Եվ Շևչենկոն դարձավ նորից աշխարհի միակ քաղաքը, ուր խմելու ջուրը գործարանում է արտադրվում: Մոտ հարյուր հիսուն հազարանոց քաղաքի յուրաքանչյուր բնակչի օրական 50 լիտր ջուր է հասնում: Այսպիսի քանակը կարող է շարժել նույնիսկ Եվրոպայի շատ քաղաքների բնակիչների նախանձը:

Այժմ նորաստեղծ կոմերիտական քաղաքը դարձել է խոշոր արդյունաբերական կենտրոն: Ճիշտ է, շուրջը դարձյալ անապատ է, բայց քաղաքում լայնահուն պողոտաներ են գցված, ծառախիտ այգիներ ու պուրակներ, ճեմուղիներ ու զբոսայգիներ: Տասնհինգամյա քաղաքում այնքան ծառ ու թուփ կա, որ բնակիչներից մեկը տեղական թերթում այսպիսի բովանդակությամբ բողոք էր տպագրել քաղսովետի գործկոմին. «Ծառերի մասին պետք է մտածել: Դրանք այնպես են աճել, որ մարդիկ վախենում են գիշերով փողոց դուրս գալ...»

Շևչենկո քաղաքը մեծ նավահանգիստ ունի: Քաղաքի օդանավակայանում վայրէջք են կատարում գերձայնային ինքնաթիռները: Երկաթուղին յոթ հարյուր կիլոմետր ճանապարհ է կտրում անապատի միջով:

Պատվավոր այցելուների գրքում շատերի կարծիքները կան քաղաքի ինքնատիպության, նոր սկզբունքով աշխատող ատոմակայանի, արդյունաբերության մեջ մտցված գիտատեխնիկական նորության մասին: Ամերիկյան նախկին տիեզերագնաց-օդաչու, այժմ ԱՄՆ-ի ատոմային էներգիայի հանձնաժողովի անդամ Ուիլյամ Անդերսը գրել է. «Որպես ինժեներ ես հիացած եմ, որ դուք այդքան կարճ ժամանակում կարողացել եք անհամեմատ շատ ստեղծել:

Ես կողմնակից եմ այն բանին, որ ...մեր երկու հզոր տերությունները կարողանան օգնել միմյանց հանուն մեր երկրների և ամբողջ մարդկության բարգավաճման...»

Այո՛, հրաշալի է Մանգիշլակը: Սերունդներ էին գալիս ու գնում, մարդիկ ծնվում, մահանում, իրենց ենթարկելով կրակը, էլեկտրականությունը, խելացի մեքենաներ էին ստեղծում, փոխներարկում արյունը և գրքեր էին գրում, իսկ մանգիշլակյան սարերը, մեկ էլ ղազախական ժողովրդական հին երգերի պես ձգվող ավազները, անավյուն նայում էին անցնող դարերին: Եվ հայտնի չէ, թե անապատն ինչքան պիտի ննջեր իր դատարկության մեջ, եթե այստեղ չգար մեր ժամանակակիցը և աշխարհի ամենասուր նշտարով դիպչեր այդ քարացած մայր ցամաքին:

Վ. ԲԵԼՈՎ

# ԻՎԱՆՈՎ

ԱԼԵՔՍԵՅ ՄՈՐԳՈՒՆ



Նկ. ԱՆՈՒՇ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ

Մեքենայի տակ կյանքումս մի անգամ եմ ընկել: Դրա համար էլ երևի շատ լավ եմ հիշում: Մի տըղա՝ հագին երկար, ծնկից վեր, փրչոտ վալենկաներ, նեղլիկ վերարկու. ահա ես ինձ այսպիսին եմ հիշում յոթ տարեկան հասակում, երբ խելքիս փչեց հրաշք քաջություն ցուցադրել:

Ուղիղ ժամը վեցին բակը մտավ բեռնատար մեքենան՝ կցասայլով: Շտապում էր գարաժ, որ հարևան բակում էր:

Յոթ տարեկանում առաջին անգամ վերագնահատում էի արժեքներն ու մի անգամ երեկոյան իմ մասին վատ մտածեցի՝ գտա, որ վախկոտ եմ: Այդ տեղի ունեցավ նրանից հետո, երբ մեր նրբանցքում հանդիպեցին ինձ երեք մեծահասակ տղաներ և պահանջեցին.

— Հանի՛ր փողերդ, թե չէ վատ կլինի...

Ձեռքս դողդողալով գրպանս տարա և հանեցի ու տվեցի կողոպտիչներին 18 կոպեկ՝ այն ամենը, ինչ ունեի: Երբ վտանգն անցավ, ես չէի կարողանում ներել ինձ գլուխս կորցնելու այդ պահի համար: Բերանս զզվելիության չափ չորացել էր, իսկ երևակայությանս մեջ պատկերանում էր, թե ինչպես պետք է վարվեի: Ամենից առաջ ամեն մեկին պետք էր շպրտել մի կողմ, երկրորդ՝ ոտքերն ու ձեռքերը պարանով կապոտել, երրորդ... Բայց կարևոր չէր երրորդը, որովհետև չորրորդը՝ որոշեցի, որ ես վախկոտ եմ:

Այդ խայտառակ կոչման հետ հաշտվելը դժվար էր: Եվ ես որոշեցի ինքս ինձ փորձել. երբ բակում, փոքրիկ դիքի մոտով անցնելիս լինի այդ մեքենան, արագ, պպզած իջնել դիքից և վազել անցնել կցասայլի առջևի ու ետևի անիվների արանքով:

Հաշիվներս ճիշտ դուրս չեկան, և... վայրկյան անց ես հայտնվեցի մեքենայի տակ: Անտարբեր և անողոք մի ուժ ինձ քարշ տվեց բակով: Փորձեցի ճչալ, բերանս լիքն էր կոշտ ձյունով, և ճիչ դուրս չեկավ:

Ողջ մնալուս համար, ես հավանաբար պարտական եմ իմ այն նեղլիկ, բայց զարմանալի ամուր և կոպիտ կտորից կարված վերարկուին: Գուցե նաև հաջողությանը: Ամեն մարդու կյանքում հազարից մեկ այդպիսի հաջողություն է լինում:

Վերջապես մեքենան վերջին անգամ փնչաց և կանգ առավ: Խցիկից ելավ վարորդը, տեսավ ինձ և շրթունքները դողդողացին: Նա արագ ինչ-որ բան ասաց, իսկ ես չէի լսում, և միայն կրկնում էի նույնը.

— Մայրիկիս ոչինչ չասեք:

Դեռևս ցավեր չէի զգում:

Իմ ցանկությունը, իհարկե, հաշվի չառան: Կես ժամ անց մայրիկս ինձ «շտապ օգնության» մեքենայով տարավ հիվանդանոց, և ես հիմա նոր միայն զգացի, թե ինչպես է այրվում դեմքս, մարմինս ջարդոտվում է և արյան կորստից թուլացած, ցածրաձայն տնքում էի:

Սկսվեց հիվանդանոցային առօրյան: Չգիտեմ մեծերի համար ինչպես, բայց յոթ տարեկան տղայի համար հիվանդանոցում ձանձրալի է, թախծալի և անդուր: Դրությունը չէին փրկում նույնիսկ տեսակ-տեսակ համով ուտելիքները, որ անընդհատ բերում էին տնից: Եղավ պահ, որ մայրիկս տագնապած փաղաքշում էր ինձ, ես չէի հասկանում, թե ինչու: Վերջապես նա բերանից թռցրեց.

— Գիտե՞ս, երբ քեզ հիվանդանոց բերեցինք, մի բժիշկ ինձ ասաց. «Դուք բախտավոր եք: Երեխան ընկել է անիվների տակ և ողջ է մնացել: Լավ եք պրծել: Ուղեղի ցնցում միայն և մի երկու սպի դեմքին...» Իսկ մեր հարևանը, Կովալենկոն, շատ ուշ եկավ մեր տուն ու թե. «Հիմա մեր Բորյան կամ հանճար կդառնա կամ ապուշ» և դեռ ծիծաղում էլ էր: Հա խելացի մարդը այդպիսի բան կասե՞ր:

Այնուամենայնիվ մայրս ինձ հարցրեց.

— Իսկ ի՞նչ ես դառնալու դու:

— Ապուշ,— պատասխանեցի ես: Ինձ շատ դուր էր եկել այդ բառը:

Մայրիկս չգիտես ինչու ուրախացավ:

Մի անգամ մի մարդ եկավ միլիցիոների հագուստով:

— Դե, պատմի՛ր, հերո՛ս,— նստեց կողքիս,— ինչպե՞ս եղավ այդ բոլորը:

Ես պատմեցի ճիշտը: Այնպես էր դուրս եկել մայրիկիս ասած բառը, որ ես էլի երկու անգամ ինձ անվանեցի ապուշ, որը շատ զարմացրեց միլիցիոներին:

— Դե, երիտասա՛րդ, քննադատում ես քեզ,— ասաց նա վերջում, գրեց իմ բացատրությունն ու գնաց:

Մի քանի օր էլ անց պալատում հայտնվեց մի ուրիշ անծանոթ այցելու: Ճիշտ է, ինձ թվաց, թե ես նրան ինչ-որ տեղ տեսել եմ:

— Իվանով,— տվեց նա իր ազգանունն ու նստեց աթոռին:— Շնորհակալություն, տղա՛ս:

— Ինչի՞ համար:

— Նրա համար, որ քննիչին սուտ չասացիր: Գիտե՞ս ինչքան շատ խոսակցություններ եղան, մեկ թե ոտքդ ջղաձգվել է ու դու ճանապարհին երկար ընկած ես եղել, իսկ ես չեմ նկատել... Մեկ թե ես բակում քշում էի մեծ արագությամբ... իսկ ոչ մի վկա: Մի խոսքով, շնորհակալություն ճշմարտության համար:

Այստեղ ես հասկացա, որ դա այն մարդն է, որը քիչ էր մնացել ինձ ճզմեր մեքենայի տակ: Բայց այդ մարդն ինձ դուր եկավ:

— Դո՛ւք էլ պատմեցեք, թե ինչպես եղավ,— խնդրեցի ես:

Իվանովը մռայլվեց.

— Քո ինչի՞ն է պետք այդ, հը՞:

Հետո տեսնելով հիասթափություն իմ դեմքին, զիջեց.

— Համարիր, որ բախտդ բերել է, տղա՛ս: Համարիր, որ երկրորդ անգամ ես աշխարհ եկել, իսկ ես քեզ համար կնքահոր պես եմ: Ես զգացի, որ մեքենան թեթևակի տեղապտույտ տվեց: Ուզեցի գազն ավելացնել... Բայց սիրտս ոնց որ թե մի բան նախազգաց... եթե գա՛զն ավելացնեի՝ կորած էիր: Ես էլ քեզ հետ: Երբեք ինձ չէի ների: Ախր տանը ես քեզ նման երկու պացան ունեմ:

Իվանովը լռեց, ես էլ լռեցի: Եվ թվաց, թե ես արդեն վաղուց, վաղուց ճանաչում եմ այդ մարդուն:

Իվանովը վեր կացավ:

— Ես այսօր եկա միայն մի քանի րոպեով: Նվեր եմ բերել: Մի՛ տխրիր, տղա՛ս... Շուտով կտեսնվենք: Դե՛, առողջություն:

Նա սեղմեց ձեռքս, տվեց գիրք, խնձոր և գնաց:

Մի քանի օր հետո նորից եկավ: Այս անգամ մենք երկար զրուցեցինք: Ինչ խոսեցինք, բոլորը հետաքրքիր էր ինձ համար: Իվանովը պատմեց իր երկվորյակ տղաների՝ Սաշայի ու Պաշայի մասին: Նրանք երկուսն էլ միայն մի տարով էին ինձանից փոքր: Մեկին նա կոչում էր Պտուտակիկ, մյուսին՝ Ագույցիկ, ինչպես Անգետիկի մասին եղած հեքիաթում է: Եվ այդ նրա համար, որ երկուսն էլ սարսափելի սիրում են բան-ման սարքել: Ի՞նչ օյին ասես չեն հանում,— պատմում էր Իվանովը,— մի անգամ հրթիռ էին սարքել: Եվ վառելիքի փոխարեն նավթ էին նրա մեջ լցրել և պատրաստվում էին ստարտի: Պայթեց այս բանը նրանցից երկու քայլի վրա: Եկա տուն, տեսնեմ երկուսն էլ մրոտ կորած, բայց վախեցած չէին: Դեռ ուրախացած էին: Տեղնուտեղը ես նրանց ոնց որ պետք էր հասցրի այդ ուրախության համար... Բայց ոչ մի օգուտ, առաջվա պես իրենց համար շարունակում են բան-ման սարքել... Ա՛յ, հիվանդանոցից դուրս կգրվես, տղա՛ս, անպատճառ ես քեզ իմ պացանների հետ կծանոթացնեմ: Դու կդաստիարակես նրանց, կղեկավարես, երբ ես չեմ լինի, կհետևես: Լա՞վ:

Ես, իհարկե, համաձայնեցի:

— Իսկ իրենց մայրիկը որտե՞ղ է,— հարցրեցի ես:

Ես իսկույն հասկացա, որ այդ հարցը չպետք է տայի: Եվ Իվանովը ասաց այն, ինչ ես արդեն հասկացել էի.

— Մահացել է: Երկու տարի առաջ:

Ու ես հանկարծ ուզեցի Իվանովի տուն գնալ, ծանոթանալ նրա Պտուտակիկ-Մտուտակիկի հետ, հրամանատարություն անել նրանց, իսկ երեկոյան տուն գնալիս թողնել ամեն մեկի համար մի մեծ համով շոկոլադ... կյանքում առաջին անգամ իմ մեջ այդպիսի ցանկություն առաջացավ: Բացի այդ, ուզեցի մի լավ բան ասել դիմացս նստած ուժեղ մարդուն: Բայց ոչ մի այդպիսի բան չկարողացա գտնել և միայն ասացի.

— Մի՛ տխրի, Իվանո՛վ:

Նա հասկացավ ու բարեսրտորեն կկոցեց աչքերը:

Մի շաբաթ անց ինձ դուրս գրեցին:

— Դասերը բաց չպետք է թողնել: Հարկավոր է սովորել,— առերևույթ խստությամբ ասաց բժիշկը հրաժեշտ տալիս: Իսկ ես չհավատացի նրա խստությանը և

ծիծաղեցի: Նա էլ ծիծաղեց: Ծվ ես սանդուղքը դոփելով իջա ցած՝ ընդունարանը, ուր ինձ սպասում էին մայրս ու հայրս:

Ամբողջ մի ամիս ես գնում էի ընկերներիս տներն ու պատմում, թե ինչպես ընկա մեքենայի տակ: Բոլորին թվում էր սաստիկ հետաքրքիր, նախանձելի, և ես անսովոր ուշադրություն էի վայելում:

— Հը՞, ինչպե՞ս էր այնտեղ՝ մեքենայի տակ,— անընդհատ հարցնում էին ինձ,— սարսափելի՞ էր, ցավո՞ւմ էր:

Հարցերը շատ-շատ էին, և ես բոլորին պատասխանում էի այսպես. սարսափելի չէր, չվախեցա, անավոր ցավում էր, բայց... դիմանում էի: Ես դառնում էի հերոս, ինձ հաճելի էր այդ... Եվ Իվանովի մասին, ինչպես եղավ, մոռացա:

Մի անգամ ժամը 6-ին բակում էի: Այնտեղով անցավ ծանոթ մեքենան: Խցիկից դուրս եկավ Իվանովը.

— Գործերդ ինչպե՞ս են, սանի՛կ,— հարցրեց նա:

— Լավ են:

— Չես հրաժարվե՞լ իմ տղաներին ծանոթանալու մտքից:

— Ո՛չ, իհարկե: Բայց ե՞րբ...

— Վաղը...

— Վա՞ղը: Չեմ կարող... Ա՛յ, եթե երկու օրից հետո...

— Գործուղման եմ գնում,— վշտացավ Իվանովը:

— Դե ոչինչ,— որոշեցի հանգստացնել նրան,— երբ էլ լինի, անպայման կծանոթանանք:

— Ի՞նչ արած, լավ,— Իվանովն արդեն ուզում էր դռնակը շխկացնել, բայց փոշմանեց,— գիտե՞ս, մեր գարաժը այստեղից տարել են: Քեզ հետ պատահածի պատճառով: Այստեղից շատ հեռու, ուր ո՛չ տներ կան, ո՛չ երեխաներ: Թե ե՞րբ կտեսնվենք մեկ էլ, չգիտեմ:

— Փաստ է, կտեսնվենք,— ասացի ես,— մի՛ կասկածեք:

— Դե՛, հաջող...— Իվանովը գազ տվեց, և մեքենան շարժվեց տեղից:

...Մի ամբողջ ամիս ես չհիշեցի նրան: Իսկ հետո մի անգամ լսեցի, թե ինչպես մայրիկս ու հայրիկս իրար մեջ խոսում էին, որ Իվանովը հիվանդանոց է ընկել: Ես դրան առանձնապես կարևորություն չըտվեցի: Իսկ Իվանովը հիվանդանոցից դուրս չեկավ ու դուրս չեկավ: Ես շատ անգամ պատրաստվեցի այցելել նրան, մի հարյուր անգամ պայմանավորվեցի հորս հետ, որ նա ինձ տանի: Նա համաձայնում էր, բայց ամեն անգամ մի ավելի կարևոր գործ էր մեջտեղ գալիս:

Իսկ երբ մի ամիս անց նորից վերջնականապես պատրաստվեցի գնալ Իվանովի մոտ, հայրս հրաժարվեց: Ես համառորեն պնդեցի, և հայրս ստիպված եղավ խոստովանել.

— Ուշ է, տղաս: Ուշացել ես...



## ԱՆԿՈՉ ՕԳՆԱԿԱՆԸ

Սպիտակ նրաշտահավը Սովետական Միության եվրոպական մասում հազվադեպ է հանդիպում: Մեր երկրի ամենագրավիչ թռչուններից մեկն է: Նուրբ երկնագույն է, գորշավուն և ձյունասպիտակ երանգներով: Իզուր չէ, որ թռչունը մի այլ անուն էլ ունի՝ «իշխանիկ»: Մեր բոլոր նրաշտահավերից ամենագեղեցիկն է:

Սպիտակ նրաշտահավերի մի զույգ բույն էր դրել սնակի կտուրի տակ: Տնակը խնձորենու անտառի մեջ էր, Զաիլիի Ալատաուի լեռներում, Ալմա-Աթայից ոչ հեռու: Թռչունները ձագեր էին հանել, իսկ ես մոտերքում նստած հեռադիտակով դիտում հաշվի էի առնում, թե ինչ կեր, ինչ հաճախականությամբ և ո՞րը՝ է՞գը, թե՞ արուն են բերում ձագերին: Տեղավորվեցի բնից 3 մետր հեռու, որպեսզի սովորական աչքով դիտեմ: Երաշտահավերին դա դուր չեկավ. սկսեցին անհանգստանալ, տագնապալից ճռվողյուններ հանել: Կարևորն այն էր, որ բնին չեն մոտենում, այլ կողքի ծառերին են նստոտում: Անմիջապես կրկնակի հեռու տեղափոխվեցի: Հապաղելը վտանգավոր է. ձագերը դեռ կույր ու մերկ են, անհրաժեշտ է նրանց տաքացնել, թե չէ արագ կսառչեն ու կոչնչանան: Լեռներում երեկոները ցուրտ է լինում:

Սկզբում ամեն ինչ սովորական ընթացք ուներ: Կանոնավոր կերպով, յուրաքանչյուր 3-5 րոպեն մեկ, արուն կամ էգը հայտնվում էին բնի մոտ փոքրիկ կանաչ թրթուրներ կտուցներին: Մի վայրկյան նըստում են կտուրի ծայրին, հետո ճարպկորեն ներս ծըլ-

## ՓՈՔՐԻԿ ՍՏՐՈՒԿՆԵՐԸ

Հարավաֆրիկյան Բոկսբուրգ ոչ մեծ քաղաքում ոստիկանները շուրջկալի մեջ առան այն թաղամասը, ուր ապրում էին աֆրիկացիները և հավաքեցին ութից տասնհինգ տարեկան երեխաներին: Ոստիկանական տեղամասում երեխաներին խմբերի բաժանեցին և ուղարկեցին սպիտակ կալվածատերերի պլանտացիաներում աշխատելու: Ռասիստները նման շուրջկալներ կազմակերպում են նաև Հարավաֆրիկյան Հանրապետության մյուս քաղաքներում:

ՀԱՀ-ում ապրում է մոտ քսանչորս միլիոն մարդ, որոնցից միայն չորս միլիոնն են սպիտակամորթները: Սրանք ապրում են ժամանակակից բարեկեցիկ շենքերում, հարուստ առանձնատներում, իսկ երկրի իսկական տերերը՝ մոտ քսան միլիոն աֆրիկացիներ, թիթեղից ու փայտից պատրաստված աղքատիկ հյուղակներում, այն էլ մեկուսացված թաղամասերում: Նրանք, որպես օրենք, հիմնականում սև աշխատանք են կատարում սպիտակամորթ արդյունաբերողների և կալվածատերերի մոտ, կոպեկներ ստանալով իրենց աշխատանքի դիմաց: Աֆրիկացիների մեծ մասը կիսա-

կում կտուրի տակ: Էգը երկար էր մնում բնի մեջ՝ ձագերին էր տաքացնում:

Բայց ահա, դիտումներիս երրորդ օրը, արուն ընկըսեց ավելի հաճախ երևալ բնի մոտ: Նրան հեշտ է տարբերել, ավելի վառ փետրավորում ունի և մի քիչ էլ մեծ է: Նա թռչում էր ձորի հակառակ կողմը, որտեղ գետակի ափին խիտ աճած ուռիներ կային: Այդտեղից էլ բերում էր թրթուրները: Տարածությունը այնքան էլ փոքր չէ, չորս հարյուր մետր կլինի: Ետ թռչելն էլ եթե հաշվենք, մոտ մեկ կիլոմետր: Ինչպե՞ս է կարողանում այդքան արագ վերադառնալ, զարմանում եմ ես: Վերջապես գաղտնիքը պարզվեց: Բնի մոտ միանգամից երկու արու հայտնվեցին: Նրանցից մեկը, պարզ է՝ սանտերը, փետուրները ցցեց և բարկացած ծլվլաց, իսկ մյուսը, կարծես ընդունելով նրա իրավունքները, ճամփա տվեց: Տանտերը միջադեպը ավարտված համարելով, ծլկեց կտուրի տակ, թրթուրը տվեց ձագերին ու ետ թռավ հաջորդը բերելու: Նույնը արեց և եկվոր արուն:

Այսպիսով 18 օրվա մեջ նրանք երեքով 9 ձագ մեծացրին: Ծանր աշխատանք է: Ձագերը զարմանալի շատակեր են: Կերակրել է պետք արևածագից մինչև մութն ընկնելը, օրական չորս հարյուր թրթուր: Եվ դա սահման չի: Բայց դե ձագերն էլ մեծանում են ոչ թե օրերով, այլ՝ ժամերով:

Ո՞վ էր երկրորդ արուն: Մի բացատրություն միայն կարող եմ տալ: Նա չուներ իր բույնը: Երևի ինչ-որ մեկը քանդել էր այն: Ձվերը, կամ էլ ձագերը, ոչնչացել են: Բնության մեջ հաճախ է այդպես պատահում:

Հնարավոր է, երկրորդ արուի բույնը ոչ ոք էլ չի քանդել: Պարզապես նա հարմար փչակ չի ճարել և անընկեր է մնացել: Դրա համար էլ սկսել է օգնել հարևաններին:

# ՖԼԱՄԻՆԳՈՆԵՐԻ ՄԱՆԿԱՊԱՐՏԵԶԸ

Մեր առջևում կապտագորշավուն կղզյակն է, իսկ շուրջը բարձրասրուն խոշոր թռչուններ են՝ վարդագույն հիասքանչ փետրավորումով ֆլամինգոները: Մեր երևալուց անհանգստացած, նրանք օդ բարձրացան, և նրանց կարմիր թևերից կարծես արևածագ բացվեց:

Կղզյակն սկսեց արագ հեռանալ ափից: Հեռադիտակը մոտեցրի աչքերիս: Ֆլամինգոների ձագե՛րը. թաթիկներով ուժգին թիավարելով, նրանք աշխատում էին հեռու լողալ մեզնից:

Պարզվում է, որ ֆլամինգոների ոտքի ելած ձագերը հավաքվում են միասին, և մի քանի տարեց ֆլամինգոյի հսկողության տակ, քոչում են լճով մեկ: Ծնողների համար դա շատ հարմար է: Ձագերի հսկողությունը դաստիարակների վրա դնելով, նրանք ամբողջովին կեր հայթայթելով են զբաղված: Ժամանակ առ ժամանակ ծնողները թռչում գալիս են մանկապարտեզ, հեշտությամբ գտնում են իրենց ձագերին և կերակրում միայն նրանց: Թե ինչպես են նրանք գտնում յուրայիններին հազարավորների միջից՝ թռչնային գաղտնիք է:

Ֆլամինգոները հազվագյուտ թռչուններ են դարձել և վերցված են խիստ հսկողության տակ: Ֆլամինգոների ամենահյուսիսային գաղութն աշխարհում գտնըվում է Ղազախստանում, Կուրգալջինի արգելավայրի Թենգիզ լճում:

Ս. ԿՈԽՍՏԱՆՈՎԻՉ

քաղց է ապրում, շատերը տառապում են տարբեր հիվանդություններով: Այսքանից հետո զարմանալի չէ, որ աֆրիկացիների կյանքի միջին տևողությունը 37—40 տարի է:

Պլանտացիաներում աշխատում են նաև երեխաները: Նրանց աշխատանքը շահավետ է կալվածատերերի համար. անչափահաս բատրակներին նրանք եռակի, քառակի քիչ են վարձատրում: Հաճախ, ինչպես դա պատահեց Բոկսբուրգում, երեխաներին ստիպում են աշխատել, իսկ ծնողները չեն էլ իմանում, թե ուր են անհետացել իրենց զավակները: Հարավաֆրիկյան ռասիստները պնդում են, որ սևամորթ երեխաները անբան են, չեն ուզում դպրոց հաճախել: Մինչդեռ իրականությունն այն է, որ սևամորթ երեխաների ուսումը շատ թանկ արժե, իսկ սպիտակամորթներինը ձրի է:

ՀԱՀ-ի սպիտակամորթ ու աֆրիկացի աշխատավորները պայքարում են, որպեսզի երկրի բոլոր քաղաքացիները հավասար իրավունքներից օգտվեն: Այդ պայքարը ղեկավարում են Հարավաֆրիկյան կոմունիստական կուսակցությունն ու Աֆրիկյան ազգային կոնգրեսը:

Այդ պայքարի մեջ են ներգրավվել նաև ուսանողներն ու աշակերտները: Հանրապետության խոշորագույն Յոհաննեսբուրգ քաղաքի մոտ գտնվող Սոուետում ՙքաղաքամերձ ավանում ուսանողներն ու աշակերտները մշտական բողոքի ցույցեր են կազմակերպում ռասիստական կարգուկանոնի դեմ: Այդ ցույցերից մեկի ժամանակ ոստիկանությունը զենքի դիմեց: Ցույցի շատ մասնակիցներ զոհվեցին, բայց աֆրիկացիները չեն հանձնվում, նրանք շարունակում են պայքարել:




Ի. ԿՐՈԻՏՈՎ




*ՀՐԱՅՐ ՓՈՂՈՍՅԱՆ*

Աշխարհի մի անկյունում ապրում էր մի ծերունի, որն ուներ փղոսկրե ծխամորճ: Այդ ծխամորճը նրա պապերը անհիշելի ժամանակներից Հնդկաստանից էին բերել, պատրաստված էր այն ժանիքից մի փղի, որը շատ-շատ տարիներ առաջ, Հնդկաստանում, զայրացել ու ավերել էր մի ամբողջ գյուղ: Բոլորը գիտեին, որ ծխամորճն ունի գերբնական զորություն: Ավանդաբար, իր պապերից ծերունուն էր հասել նաև մի գաղտնիք, համաձայն որի, աշխարհում մեծ անարդարություն կատարվելու դեպքում, կհայտնվի փիղն ինքը և կպատուհասի անարդարին:

Գարնան վերջին ամիսն էր, բայց անձրև չկար ու չկար, ցանքը չորանում էր: Գյուղացիները դիմեցին ծերունուն: «Օգնելով մարդկանց, ինքդ էլ կերջանկանաս»,— մտածեց ծերունին, վերցրեց ծխամորճը, գնաց բաց դաշտ, նստեց մի քարի, ծխախոտով լցրեց ծխամորճն ու ծխեց: Ծխի քուլաները դանդաղ բարձրացան վերև, երկնքի կապույտը սկսեց չքանալ: Ծերունին շարունակում էր ծխել, իսկ դարչնագույն քուլաները խտանում էին ու խտանում: Երևացին իրար գրկող անձրևաբեր սև ամպեր: Մի անգամ ես կրակը շիկացավ ծխամորճում, ճայթեց կայծակը, և կաթիլները ընկան հողի մեջ: Երբ անձրևը հորդացավ, ծերունին գնաց նստեց մի տանիքի տակ և սկսեց լուռ հիանալ վարար անձրևով: Մարդիկ երջանիկ էին, իսկ նա էլ երջանիկ էր մարդկանց երջանկությամբ: Անցան օրեր, և անձրևները նորից սակավացան: Առաջին անձրևից գետերը առատ էին ջրով, սակայն գյուղացիները չօգտվեցին առատ ջրից և ջրամբարներ չշինեցին: Նրանք հույսը դրել էին ծերունու ծխամորճի վրա: Եվ ծերունին նորից անձրևներ պարգևեց նրանց. «Օգնելով մարդկանց, ինքդ էլ կերջանկանաս»: Եկավ աշունը, հասան բերքահավաքի օրերը: Մարդկանցից մեկը թե՝ եկեք դիմենք ծերունուն, թող մի բան մտածի ու այնպես անի, որ բերքն ինքն իրեն հոսի մեր մառանները: Գյուղովի, իրենց այս պահանջով ներկայացան նրան... Ծերունին լուռ համաձայնեց: Թե ինչ արավ, ոչ ոք չիմացավ, չհասկացավ, միայն արթնացան մի առավոտ ու տեսան՝ բերքն եկել, լցվել է մառանները: Մի օր էլ նույն կերպ՝ գյուղովի ներկայացան ծերունուն և պահանջեցին մի հնարքով անել այնպես, որ իրենք չչարչարվեն, իրենց ամբարների ցորենը ինքն իրեն ջրաղաց գնագա ալյուր դարձած, հաց դառնա թոնիրներում, լցվի տաշտերը... Ծերունին այդ էլ արեց: Այդ ընթացքում մարդիկ ուտում-խմում էին, զվարճությունների հանձնվում և անգործությունից սկսեցին գիրանալ:

Եկավ ձմեռը: Դաժան ցրտեր էին: Ձյունը կիսով չափ ծածկեց տները: Պետք էր փայտ բերել և վառարանները վառել: Բայց մարդիկ այնպես էին գիրացել, որ չէին կարողանում և ի վիճակի էլ չէին անտառ փայտի գնալ: Նորից գյուղովի գնացին ծերունու մոտ և առաջարկեցին իրենց դուռ ու կտուրը լցնել վառելափայտով: Երբ նրանք ներս մտան, ծերունին հիվանդ պառկած էր և չէր կարողանում նույնիսկ վառարանը վառել:

— Հիմա՛ր ծերուկ, ի՞նչ ես անգործ նստել, գյուղը կոտորվում է ցրտից, իսկ դու պառկել հազում ես,— ասաց մեկը:

— Բարի՛ մարդիկ, ես չեմ կարող այլևս, իմ վերջը եկել է...

— Գյուղի վերջն է գալիս, իսկ դու քո վերջի մասին ես մտածում, մարդիկ չեն կարողանում փայտ բերել, վառարանները վառել:

Երբ ծերունին լսեց, որ գյուղի վերջն է գալիս, շատ տխրեց, մի կերպ վեր կացավ, վերցրեց ծխամորճը ու դուրս եկավ տնակից մարդկանց օգնելու: Բուքը և ցուրտը ավելի սաստկացրին ծերունու հազը, բայց գյուղացիները նրան շտապեցնում էին:

— Այլևս չեմ կարող,— ասաց ծերունին և վայր ընկավ ձյուների մեջ, ընկավ ու լաց եղավ, լաց եղավ գիրացած ու ծուլացած մարդկանց համար, լաց եղավ, որ նրանք այդքան չար են ու դաժան:

Իսկ գյուղացիները նրան քաշքշում էին ու բղավում.

— Վե՛ր կաց, հիմա՛ր ծերուկ, ժամանակ ես գտել լաց լինելու, մարդիկ կոտորվեցին ցրտից:

Քամու բերած ձյունը սկսեց ծածկել ընկած ծերունուն, իսկ նրա ծխամորճը դեռ մխում էր: Երբ համոզվեցին, որ նա էլ չի կարող կանգնել, թողեցին ձյան ու քամու բերանում:

— Մենք կծխենք քո ծխամորճը, եթե դու չես կարող,— ասաց նրանցից մեկը և վերցրեց ծխամորճը:

— Պետք չէ՛, մարդի՛կ, խղճացե՛ք ձեզ,— տնքաց ծերունին արդեն իրեն ծածկած ձյան տակից: Բայց ուշ էր, մարդը, որ վերցրել էր ծխամորճը, ծխեց: Ուժեղ քամի էր, բայց ծուխը անշեղ, հանդարտ բարձրացավ, խտացավ գորշ ամպի ձևով, ապա այդ ամպից ուրվագծվեց մի հսկայական փիղ և սկսեց զարհուրելի հանդարտությամբ ներքև իջնել:

Կանգնածները դեռ չէին հասկանում, թե դա ինչ է, բայց երբ հըստակորեն երևացին երկու մեծ ժանիքները և հսկայական կնճիթը, նրանք սարսափով այս ու այն կողմ փախան: Իսկ փիղը նետվեց տների վրա և սկսեց ավերել հանդիպած ամեն ինչ: Մարդիկ սարսափի մեջ այս ու այն կողմ էին նետվում, բայց այնպես էին գիրացած, որ հազիվ էին շարժվում: Իսկ փիղը ավերում էր տներն ու ու ավերում: Մարդիկ օգնության էին կանչում ծերունուն, բայց ձյունը վաղուց ծածկել էր նրան: Փիղը ավերեց բոլոր տները, բացի մեկից: Եվ դա ծերունու տնակն էր. գյուղացիները հասկացան, որ փիղը չի մոտենա այդ տնակին, և բոլորը խմբվեցին այդտեղ: Երբ հսկա կենդանին հանգստացավ ու գնաց ծերունուն փնտրելու, մարդիկ հանդարտվեցին և իսկույն էլ զարմացան, որ մի ամբողջ գյուղ տեղավորվում է ծերունու այս փոքրիկ տնակում:

Փիղը գտավ ծերունուն: Կնճիթով զգուշությամբ վերցրեց և դրեց իր տաք մեջքին: Ծերունին այլևս չէր հազում, նա միայն դառը ժպիտով նայում էր իր տնակի կողմը, ուր հավաքվել էին բոլոր գյուղացիները:

— Ոչինչ, նրանք այնքան գեր են, որ մինչև գարուն կդիմանան,— ասաց փիղը՝ հասկանալով ծերունու մտքերը: Ծերունին շատ էր թուլացել և կարողացավ միայն մտածել, որ մարդիկ ստիպված նորից կաշխատեն և նորից կերջանկանան, իսկ ինքն էլ մի օր այստեղ կգա առանց փղոսկրե ծխամորճի և կուրախանա նրանց երջանկությամբ:

*Նկ. ԱՆՈՒՇ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ*



# ԽՈՒԼԵՐԻ ՎԵՃԸ



(Հայկական ժողովրդական հեքիաթ)

Մի օր մի գյուղացի հանդում վար է անում: Մեկ էլ տեսնում է հեռվից մի չոբան ձայն է տալիս, ձեռով-ոտով ինչ-որ բան է ասում: Էս գյուղացին չոբանի ասածից բան չի հասկանում, որովհետև ականջը ծանր էր: Վարն ընդհատում է, դառնում չոբանին.

— Հը՞, ի՞նչ կա, ախպերացո՛ւ:

Չոբանը թե.

— Ախպե՛ր, ախպե՜ր ջան, այծերս կորցրել եմ, չես տեսե՞լ:

Վար անողին թվում է, թե չոբանն հարցնում է՝ էսօր ինչքա՞ն վար ես արել: Ձեռքը մեկնում, ցույց է տալիս.

— Հրե՜ն, էն մասրենուց էս կողմը վարել եմ:

Դու մի ասի, էս չոբանն էլ է խուլ լինում: Նրան էլ թվում է, թե վար անողը ձեռքը մեկնելով ասում է՝ հրե՜ն, էն մոտիկ ձորումն են քո այծերը:

*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*

— Ա՜յ ապրես դու, հա՜,— ուրախանում է չոբանը,— երեկվանից ման եմ գալիս անտերներին: Ասում էի՝ հիմի գայլերը կերած կլինեն: Աչքալուսանքիդ համար, մի պոզատ այծ ունեմ՝ քեզ լինի:

Էս վար անողը կարծում է, թե չոբանն իր վրա ծիծաղեց, ասելով՝ բա մի օրվա մեջ էսքան քի՞չ կվարեն:

— Է՜հ, ինչ անեմ, ինչքան ուժս պատել է, էնքան էլ վարել եմ:

Չոբանը սրան թողնում է իր հող ու հերկի հետ, ինքը գնում դեպի ձորը: Տեսնում է, ճիշտ որ, այծերը ձորում ողջ-առողջ արածում են իրենց համար: Քշում բերում է ու էն պոզը կոտրած այծը ջոկում, հերկվորի առաջն է անում, թե.

— Ես իմ խոսքի տերն եմ, քեզ լինի, ախպե՛ր ջան:

Վար անողին թվում է, թե չոբանն ասում է՝ այծիս պոզը դու ես կոտրել, դու էլ պիտի վնասը քաշես: Վար անողը երդվում, կրակն է մտնում, երկինք-գետին վկա կանչում, թե ես քո այծի մազին չեմ դիպել, ուր մնաց թե պոզը կոտրեի: Չոբանն էլ, քանի որ նրանից ավելի խուլ էր, կարծում է, թե նա ասում է՝ պոզատը չեմ ուզում, մի ուրիշը տուր: Սա էլ կողի է ընկնում, թե՝ խոսքիս տերն եմ, պոզատն եմ խոստացել, պոզատն էլ պիտի տամ: Քիչ է մնում բանը կռվի հասնի: Էդ պահին մոտերքով մի կին է անցնելիս լինում: Վար անողը մաճը թողնում, ափալ-թափալ հասնում է, սրա առաջը կտրում, թե.

— Քույրիկ ջան, կա՛ց, ասա մեզանից ո՞վ է արդար, ով՝ մեղավոր:

Եվ պատմում է՝ էսպես ու էսպես:

— Հիմի դո՛ւ ասա, էս մարդուն ես ո՞նց խոսք հասկացնեմ, որ հավատա, ձեռք քաշի ինձանից, գնա իր այծի պոզը կոտրողին գտնի:

Այծի տերն էլ թե.

— Դո՛ւ ասա, ա՜յ քույրիկ, էս պոզատ այծը քի՞չ է մի աչքալուսանքի դիմաց, բա սա խիղճ է՞...

Դու մի ասի, էս կինն էլ է խուլ լինում: Սա էլ իր մարդուց խռոված՝ փախչելիս է լինում հորանց տուն: Սա էլ կարծում է, թե էս մարդիկ նախատում են իրեն, քո մարդն է, ասում են, վրադ բարկացել, մեկ-երկու հատ էլ հասցրել է, ինչ անենք, դրա համար հորանց տուն կփախչե՞ն:

— Չէ՛, որ չէ՛,— ասում է խուլ կինը,— թող շուն ու գելի փայ դառնամ, թող արար աշխարհ վրաս ծիծաղի, բայց ես էն տունը էլ ոտ դնողը չեմ, քանի դեռ էն քոփակն ու ջադուն՝ կեսուրս ու կեսրարս էն տան մեջ են:

Ասում է ու քշած գնում դեպի հորանց գյուղը:

Էս երկու խուլերն էլ, տեսնելով, որ իրենց վեճը հարթվելու բան չի, զայրացած թողնում ամեն մեկը գնում է իր բանին:

Ո՞րն է այս հեքիաթի իմաստը. այն, որ մարդիկ, խուլ լինեն թե ոչ, երբ իրար չեն լսում, երբ իրար չեն հասկանում, բարեկամությունն էլ թշնամության տեղ են ընդունում:

*ՄՈՒՐԵՆ ԲԱՋԻՆՅԱՆ*



# ՊԱՊԻ

ՀՐԱՉՅԱ
ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

Մոսկովի արտամոտ ծմակներում փայտահատ էր Աբելը։ Առավոտ շուտ անտառ էր մտնում, ուշ երեկոյան հասնում գյուղ։ Քնի մեջ էլ՝ անտառի հետ էր։ Հետո մտածեց՝ մի քնելու համար արժե՞ այս ոտնակոտրուկ գնալ-գալը։ Մարդ էր, գուցե մտածեց՝ անտառն առանց իրեն կարող է գիշերով ոտ առնել փախչել։ Մեկ-մեկ գյուղ կգնա, այն ժամանակ, երբ անտառը խոր քնած կլինի։ Լորենիների սպիտակ բացատում իր կաղնեփայտ տունը շինեց։ Գայլից խլված կխտարի եղջյուրները մեխեց դռան մոտի սյանը, հողե հատակին փռեց արջի մորթի ու մտածեց՝ ի՜նչ լավ բան է արել իր մերը, որ իրեն աշխարհ է բերել։ Ամեն իրիկուն էդ մտքից աչքերը խուտուտ էին գալիս ու քնում էր՝ ականջների ու սրտի մեջ լցնելով գիշերվա անտառի զարթնած, խաշամհոտ ու ձյունոտ ձայները... Իր մերը շատ լավ է արել, որ իրեն բերել է, իր Սանամը շատ լավ է արել, որ բերել է իր չորս տղաներին, մի աղջիկ էլ է բերել, կին է, դա էլ իր գործն է։ Ինքը շնորհակալ է անտառի ամենամեծ փչակում նստած իր բաժին աստծուց։ Մեծ լորենու տակ մի տասը մեղվափեթակ է շարել՝ շուրջը ամուր չափարել, որ բան է, հանկարծ արջումարջ գա, հոտոտելով ու փնթփնթալով շուռ չտա փեթակները։ Նման դեպքեր վերին գյուղերում շատ են եղել, հենց դռան առաջ, էլ ի՜նչ մնաց էս խուլ ծմակի մեջ...

Գյուղից փայտահատի կինն էր գալիս՝ տակ ու վրան փոխելու։ Լիքը գալիս, լիքը գնում էր։ Մի օր սունկ ու եղինջ էր տանում, մի օր սինդրիկ ու իցկոտ։ Մի օր ուրախանում էր, որ փչված լորենուց թեթև, համմար, շատ դուրալի խնոցի է սարքել Աբելը, մեջի հարած կարագն ի՜նչ համով կլինի։ Բա ի՜նչ սոթլիկ կոթեր է սարքում։ Մեկ-մեկ կնոջ հետ առավոտը դեռ մութուլուսին ալլկոտ սարերն է բարձրանում՝ շարմաղ ավելուկ քաղելու։ Օգոստոսին մոռ ու մոշ է լցնում ամանները, ուշ աշնանը՝ ցուրտ կերած տանձ ու խնձոր է հավաքում։ Բոլորը՝ ինչ անում է գործի արանքներում։ Փայտահատի տղաներն էին գալիս՝ Անդրանիկը, Եփրեմը, Ծավարշը, Հովհաննեսը՝ իրարից մեծ ու փոքր, բայց արդեն իրար շորեր հագնող։ Ու արդեն մեծավարի, հոր նման գոտիների մեջ էին խրում կացինները, խորանում անտառների մեջ ու ինչպես փայտահատ հայրն էր ասում՝ ականջները կտրած, նշան արած ծառերը տապալում։

Մեծանում էին փայտահատ Աբելի որդիները։ Եվ ո՜նց էին հիանում, տեսնելով իրենց հորը՝ ծակոտկեն երեսակալը քաշած գլխին, փուքսը՝ մոտը, մեղվափեթակների շրջանակներն ուշադիր նայելիս։ Կայծակնահար կաղնի էր տապալվել՝ հայրը տնքալով ճղահարում էր, ճղճղում ու կարդում միայն մի բան՝ կաղնու ապրած տարիքը։ Ինչ-որ վճիտ ցող աչքերում աղբյուրի գուշն էր խորացնում։ Լանջապռոշ ձորերը իրար կապող կամուրջ էր սարքում՝ նախ եզնագերաններ գցելով, ապա ճաղեր շարելով, ճմելով, հողելով... Փայտահատը իր դեղին մեղվագվվոցի միջից, տապալված կաղնու հետ հառաչելով, աղբյուր բացելով ո՜նց էր կարոտում ու սիրում իր որդիներին, մտքում նրանց շան թուլեք էր ասում։ Մտքում ասում էր՝ սարի մեջք ունեցեք, անտառի մեջք ունեցեք, ձեր հոր մեջքի նման պինդ մեջք ունեցեք... Առավոտից իրիկուն տաշտշոցի մեջ էր. հա ուրագի պոչ, կացնի կոթ, եղանի պոչ էր սարքում, թի էր սարքում, ձեռները թե որ հոգնում էին, շվի էր սարքում, ամեն տղին մի շվի, ու մտքում ոնց էր խնդում, թե տղաները ինչպես կնվագեն այստեղ, անտառում։ Սամացու ու ճաղացու էր կտրում ու սարքում... Ամեն ինչ աշխոր էր։ Ու թե կինը խնդրում էր, թե մի խնոցի կամ կոթ սարքի, ժպտում էր՝ քանի՞ աշխոր կտաս, աշխորին ի՞նչ կտաս... Մի գաթա՞, երկու նազո՞ւկ, եղավ, սարքեցի...

Մարդ էր, աշխարհից շնորհակալ մարդ էր, անտառի նման աչքը կուշտ ու աչքը խշխշան օրերով լցված մարդ էր։ Փայտահատ էր, մի նոր պաշտոն էլ ավելացավ՝ անտառատնտեսության հսկիչ։ Անում էր այն, ինչ մինչև այդ։ Բայց հիմա գյուղում կինը փող էր ստանում։ Եվ այդքան բան էր սարքում, բայց մի ծառի չէր նեղացնում։ Ավելորդ ճյուղերից իր գործն էր տեսնում։

Հետո կինը գյուղում իր քաղած ճլից ճիլոպ էր գործում, իսկ ինքը քթոցներ էր սարքում՝ մատնահատիկ, ճկելով, հյուսելով։ Գիտեր, որ ուռիներից քանի ոստ պիտի պոկեր, որ ծառի տեսքը տեղը գար։

Հոր հեքիաթը տղաներին կանչում էր նրա մոտ։ Փայտահատ Աբելը հեքիաթներ էր պատմում՝ բոլորն իր հնարած, բայց ոչ հնարովի, բոլորն իր լսած, բայց ոչ լսովի...

Պատերազմի ժամանակ Մոսկովում փայտահատների մի ամբողջ խումբ էր աշխատում։ Աբելը մտնում էր անտառի խորքերը, ջոկում ծուռ ու մուռ, արդեն ապրած, կյանք տեսած ծառերը, մի երկու անգամ կացինը վրա բերում, նշան անում, որ իբր կտրելու ենթակա է ու շտապով մտնում մյուս ծառին։ Իսկ փայտահատների բանակի մեջ կային ուժատներ, վիրավորներ, որ միայն իրենց ուժը պատած ծառերի օձիքն էին բռնում։ Աբելը չէր համբերում, սպառնում էր։ Բայց այդ խուլ անտառում խեղճ էին բոլորը, տխուր էին բոլորը, ծառերի հետ տապալվում էին բոլորը։ Սոմի հաց էին տալիս նրանց, ամբողջ շաբաթ կնմթելով, ատամի ժանգով ապրում էին, շաբաթվա վերջում փոքրիկ խուրջինների մեջ պահածը խնամքով հասցնում տուն՝ երեխաներին։ Սոմի հաց էին տանում, հետո ինչ տալիս էր անտառը՝ սունկից, բլդրղանից, վայրի տանձ ու խնձորից մինչև սրտում, հոգում պահած այն հավատը, որ կվերջանա, պատերազմը կվերջանա...

Ամեն շաբաթվա վերջում փայտահատ Աբելը իր բերանից, իր աղջկա բերանից կտրած սոմի հացը թաքուն դնում էր ընկերներից մեկի խուրջինի անկյունում. ում տանը սպասող աչքեր շատ կան, ում տանը խուրջինի մեկնվող ձեռքեր շատ կան։

Ձմռան դաժան ցրտերին, մատների մեջ փչելով, ձեռ ու ոտ տրորելով ծառեր էին կտրում, եզներով դուրս քաշում ճամփա, որտեղ եզը ուսը տակը չէր տալիս ու ոտը չէր բռնում, իրենք էին քաշում, սղոցում, դարսում, դարսդասում գետափերանին։ Ու թե պատերազմ չտեսած Աբելը բացում էր բերանը, բողոքում դեռ ապրելու ծառը կտրելու համար, վրա էին տալիս.

— Կարծում ես կովի տեղը ջոկում-ջոկջկում են ու նո՞ր որոշում, թե ով է հարմար... Որը պատահի, երբ պատահի, ինչպես պատահի...

— Ախր, ծառն էլ մարդ է...

— Հա՛, բայց մարդը ծառ չէ...

# ՀԱՐՍՏՈՒԹՅՈՒՆԸ

Փայտահատ Աբելը սրտի այրումով էր սպասում իր չորս տղաներին...

Փայտահատները սպասում էին գարնան ձնհալներին, գարնան անձրևներին, հալոցքներին, աշնան անձրևներին, պատրաստ, բան է, մեկ էլ տեսար, թեկուզ ամռան տապին մի հեղեղ սկսվեց, ցամաք առուները էլ սրընկեցրունկ լցվեցին: Վարարում էին ձորձորի առուները՝ Եղեգնագետը դարձնելով խենթ ու հզոր: Գետի̃ վարարելու հետ փայտը տալիս էին ջրերի բերանը, լցնում էին գետը, իրենք էլ մինչև ոսկորները թաց ու հոգնած: Ջրերը գերանները տանում էին, հեռացնում ու ինչ-որ տեղ, երկաթգծի մոտ հանում էին փայտը, որ բարձվում էր վագոնները և ուղարկվում ցուրտ ու սոված տները տաքացնելու...

Անտառապահները ոչ այն է հեռու կոիվների մեջ էին՝ պապ-բոցերում, ոչ այն է՝ իրենց տուն-դռանն էին: Կիսատված մարդիկ էին, որոնք կիսատում էին անտառը և ուղարկում հեռուները:

Պատերազմի ավարտից հետո Աբելը դարձյալ գյուղ չգնաց: Դարձյալ մնաց իր անտառի հետ: Հեռավոր գյուղում մարդու գնացած աղջիկը հոր մասին պատմեց իր փոքրիկ տղային, բայց նա չհասկացավ, չպատկերացրեց անտառի գույների ու անտառի շշուկների մեջ այդպես էլ չիմացավ, թե իր Աբել պապը ինչպես է կորչում-խառնվում անտառի բաց գույներին ու փակ շշուկներին: Աբելն աշխարհում մենակ մնաց: Չորս տղայի չգալուն Սանամ չէ, քար չէր դիմանա: Սանամը վաղուց գնացել էր...

Պարզապես լորենիների գեղեցիկ բացատում ապրում էր̃ մի շարժվող կաղնի՝ խոր թաքնված արմատներով, հին երկինքների շառաչներին վաղուց անտարբեր: Քիչ էր մնում հավատա, կամ հավատում էր, որ տղաները մի ծառի ետևից, մի ձորակից, բխող աղբյուրի միջից, մի տեղից, իր անտառի ձայներից հիմա, հրե-հրես դուրս կգան...

Կռիվ գնալուց առաջ մի շիմշատ լորենու կողին Աբելի տղաները գրել էին իրենց անունները՝ Անդրանիկ, Եփրեմ, Շավարշ, Հովհաննես: Ո՞րն էր ավելացրել՝ բարի հիշեք: Լորին կեղևակալեց, որդիների խոնավ անունները պահեց իր կողքին բարի այս ծառը:

Գետի հետ փաթաթվելով, ոլոր-մոլոր մի ճանապարհ էր անցնում Մոտկորի մթին անտառներով: Թե ինչ-որ տեղ քարափներում կտրվում-կորչում էր, ապա մի երկու քայլ հետո գետի ձայնից ուշքի էր գալիս ու երևում իր հին մաշվածությամբ: Սա Մոտկորի գյուղերը տանող կարճ ճանապարհն էր, ուր ամեն քայլափոխի արթնանում ու հանգչում են հազար ոտնաձայներ ու հազար հուշեր:

Նոր, լայն, խնամպատ ճանապարհ կառուցվեց: Ձորակների վրա կամրջակներ էին սարքվում: Այնպես էր ստացվելու, որ նոր ճանապարհը, համաձայն նախագծի, գալու-անցնելու էր ծերունի Աբելի տնակը ոտնատակ տալով, շարքից հանելով, հենց նրա միջով, նրա տղաների լորենու միջով: Շինարարության երիտասարդ աշխղեկը հասկացավ գործի նրբությունը և մի քանի անգամ շրջկենտրոնում տարբեր ղեկավարների հանդիպելով, կարողացավ հասկացնել, որ գործ ունի ոչ թե քարաժայռի հետ, այլ մարդու հետ: Առաջարկեց նոր նախագիծ՝ շրջանցել Աբելանոցը՝ հանգիստ թողնելով ծերունուն, նրա լորենիների բացատն ու հուշերը:

— Թանկացնում ես ճանապարհը, ավելորդ ոլորան ես ստեղծում,— առարկեցին նրան:

— Բանվորական ուժի, վառելանյութի, շինանյութի, ամեն ինչի խնայողություն կանեմ: Կտնտեսեմ...

— Դա պարտավոր ես, այնպես էլ պարտավոր ես...

— Նախագծողները պարտավոր են հաշվի առնել ոչ միայն ճանապարհի ջրերն ու ձորակները, հազվագյուտ ծառատեսակները, այլև՝ մարդկանց: Ես չեմ կտրի ծերունի Աբելի որդիների լորին, լորիների բացատը պետք է մնա:

— Կկտրես, խելոք ես... ճանապարհը բացատով էլ անցնելու է:

— Ճանապարհի սկզբում հուշարձան-աղբյուր կա, եթե դա չլիներ, ճանապարհը կանցներ հենց աղբյուրի տեղով,— համառեց աշխղեկը:

— Աղբյուրը կառուցված է: Հիշատակ է: Մենք պետք է հարգենք հիշատակները:

— Նրա հիշատակն էլ լորիներն են, լորիների գեղեցիկ բացատը:

— Չէ՜ մի... բուլդոզերը դե՛մ արեք ու տակռահա՛ն արեք, իսկ ծերունուն համոզեք գյո՛ւղ վերադառնա:

— Նա իր որդիներից՝ իր լորիներից չի հեռանա,— համառեց երիտասարդ աշխղեկը:— Անտառը հասկանում է նրան: Պարտավոր ենք մենք էլ հասկանալու:

Չկտրվեց և ոչ մի լորենի: Նոր ճանապարհը պտույտ տվեց, ծռեց ճամփան:

Ծերունի Աբելը այդպես էլ չիմացավ, թե ճանապարհը ինչպես եղավ, որ ծռեց իր ճամփան:

Մոտկորի ծմակների խորքերում ինչքան թաքուն ու եղնիկաչք աղբյուրներ կային՝ հանվեցին մեծ ճանապարհի վրա, հուշարձան-աղբյուրներ կառուցվեցին պատերազմից չվերադարձած հարազատների հիշատակին:

Ծերունի Աբելը չկարողացավ իր իմացած, իր սրտի ուզած ջուրը ճամփա հանել, քար տաշել ու վրան գրել տալ՝ պատերազմից չվերադարձած որդիներին՝ Անդրանիկի, Եփրեմի, Շավարշի, Հովհաննեսի հիշատակին:

Օր ծերության նա կարողանում էր միայն պատվաստներ անել:

«Ես քեզ կտրում եմ,— ասում էր վայրի խնձորենու պատվաստացու ճյուղին,— դու մի՛ արցունքոտվի: Ես քեզ ազնիվ մատեր եմ տալու»:

Տանձ ու խնձորի հարյուրավոր պատվաստներ արեց անտառների խորքերում: Իր տնակում, կավահողի մեջ պահում էր ազնիվ մատերը, գարնան կողմ հանում, հուշարձան-աղբյուրների մոտ տանձ ու խնձորի ծառեր տնկում, իր ձեռքով պատվաստում, օրհնում լոին... ու գնում դեպի իր խոր ծերությունը:

Չորս եղբորն ու մորը կորցրած աղջիկն այնպես էլ չկարողացավ իր որդուն հասկացնել, թե ինչ հրաշք պապիկ ունի, որն ապրում է անտառում, իր աղբյուրները բաժանում է մարդկանց, իր մեղրահացը բաժանում է մարդկանց, իր համով-հոտով զրույցները բաժանում է մարդկանց, իր անտառի ուրցի բույրը, լորիների թելիկ-մելիկ բուրմունքը բաժանում է մարդկանց... Եվ ինչքան բաժանում է, այնքան հարստանում է նա, գնա տեր դարձիր պապիդ հարստությանն ու դու էլ քո կարեցածն ավելացրու եղածի վրա:




Ինչպիսի՞ն է եղել մեր Երկիրը անցյալում։ Ինչո՞ւ հատկապես նրա վրա կյանք ստեղծվեց։ Ինչո՞ւ երկրային մթնոլորտը գրեթե ամբողջովին կազմված է ազոտից ու թթվածնից, իսկ մյուս մոլորակների մթնոլորտում այդ գազերը շատ քիչ են կամ բոլորովին չկան։ —

Միայն Երկիրը ուսումնասիրելով հնարավոր չէ այս հարցերին պատասխանել։ Նրան պետք է համեմատել նման կազմություն ունեցող այլ մոլորակների ու դրանց արբանյակների հետ։




Լուսնաքարի առաջին նմուշները հիմնականում կազմված էին բազալտից։ Գիտնականների համար դա անսպասելի չէր։ Հանելուկայինն այն էր, որ ամբողջ Լուսնի միջին խտությունը չէր համապատասխանում ո՛չ բազալտի, ո՛չ էլ նրա տարատեսակի՝ էկլոգիտի խտությանը։ Իսկ դա նշանակում էր, որ այնտեղ այլ կազմության նյութեր էլ պետք է լինեն։ Եվ Ռիֆեյան լեռների մոտերքից բերված նմուշների մեջ նման տեսակ արդեն կար՝ անորտոզիտը։ Ջերքի տակ եղած տվյալների համաձայն, անորտոզիտը տիրապետող ապար է այնտեղ։ Երկրի վրա անորտոզիտ կա միայն ընդերքի ամենահին շերտերում։

Հայտնի դարձավ նաև, որ անորտոզիտը չի պարունակում ռադիոակտիվ այնքան էլեմենտներ, որքան մինչ այդ ենթադրվում էր։ Այս ստիպեց փոխել մեր պատկերացումները Լուսնի զարգացման մասին։ Հաշվումները ցույց տվեցին, որ ռադիոակտիվ քայքայումից անջատված ջերմությամբ Լուսինը պետք է որ տաքանար, իսկ ընդերքը պետք է հալվեր ամենաքիչը մեկ միլիոն տարի ավելի շուտ, քան ենթադրվում էր։ Հետո, Լուսնի կեղևի հաստությունը, լուսնային երկրաշարժարանների տվյալների համաձայն, հասնում է 65 կիլոմետրի, իսկ նման հաստ «զրահի» առաջացման համար անցյալում պահանջվել է ողջ Լուսնի ձուլումը, և ոչ թե միայն նրա արտաքին շերտի (200—270 կմ), ինչպես ենթադրում էին առաջ։

Այս ամենը լույս է սփռում ոչ միայն Լուսնի, այլև Երկրի անցյալի վրա։ Չէ՞ որ մեր մոլորակներն ու նրանց բնական ուղեկիցները առաջացել են միաժամանակ՝ 4—6 միլիոն տարի առաջ։




Տիեզերակայաններից կատարված Մարսի արտաքին մակերևույթի լուսանկարները գիտնականները համեմատեցին երկրագնդի մակերևույթի հետ։ Եթե հաշվի չառնենք լեռնաշղթաները և օվկիանոսի խոր ձագարները, ապա երկրագնդի վրա երկու մակարդակ կա. աշխարհամասերի միջին մակարդակը և օվկիանոսների հատակների միջին մակարդակը։ Անցումը այդ երկու մակարդակների միջև ևս անվանում են մայրցամաքային թեքություն, որը մի հսկայական աստիճան է կազմում և զգալի տեղ է զբաղեցնում։ Մարսի վրա նույնպես նման պատկեր է երևում։ Միակ տարբերությունն այն է, որ այնտեղ օվկիանոսների փոխարեն հսկայական տարածքով գոգավորներ կան։

Մարսի երկու մակարդակների տարբերության շնորհիվ (8 կմ), հնարավոր եղավ որոշել, որ մարսյան կեղևի հաստությունը հասնում է 20 կմ-ի, 15—85 կմ հնարավոր տատանումներով։ Դա մոտ է Երկրի կեղևի հաստությանը (6—40 կմ)։ Հետազոտությունները ցույց տվեցին, որ Երկրի վրա օվկիանոսային լեռնաշղթաների շրջանում կատարվող կոտրվածքներից դուրս են գալիս կեղևի երիտասարդ կտորներ։

Երկրի ամբողջ կեղևը կազմված է ճեղքված ու կոտրված մի քանի հսկայական սալերից, որոնք մշտական շարժման մեջ են գտնվում։ Օվկիանոսային լեռնաշղթաներից հաճախ սալեր են անջատվում և շարժվում դեպի մայր ցամաքների ափերը, բախվում այնտեղ եղած սալերին ու նորից օվկիանոսի հատակն իջնում։

Լուսնի վրա նման երևույթ տեղի չի ունենում։ Մարսի վրա կեղևի բարձրացման բացահայտ նշաններ կային, սակայն առայժմ չի հաջողվում գտնել սալերի հեռացման կամ մերձեցման դեպքեր։

Կենսաբանական ակտիվությամբ Մարսը Երկրի և Լուսնի համեմատությամբ միջանկյալ դիրք է գրավում, և դա զարմանալի չէ, որովհետև Երկրի տրամագիծը 12750 կմ է, Մարսինը՝ 6800 կմ, Լուսինը՝ 3480 կմ։ Որքան մեծ է մոլորակը, այնքան նրա ընդերքում ճնշումն ու ջերմությունը արագ է բարձրանում և ավելի արագ են կատարվում սալերի շարժումը նպաստող գործոնները։

*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*



Վերջին ութ տարիների ընթացքում սովետական «Վեներա» և «Մարս», ամերիկյան «Մարիներ» տեսակի միջմոլորակային կայանների օգնությամբ մենք իմացանք, որ Վեներայի մթնոլորտը գրեթե 100 անգամ խիտ է Երկրից, իսկ Մարսի մթնոլորտը՝ 150 անգամ նոսր է: Վեներայի մակերևույթի ջերմությունը հասնում է 470 աստիճանի, իսկ Մարսի վրա միջին հաշվով 50 աստիճան սառնամանիք է: Թվում էր, թե այդ մոլորակների մթնոլորտի բաղադրությունն էլ տարբեր կլիներ միմյանցից: Սակայն իրականում իրար նման են և խիստ տարբերվում են Երկրի մթնոլորտից:

Եթե Երկրի մթնոլորտում 78 տոկոս ազոտ կա, 21 տոկոս թթվածին, մեկ տոկոս իներտ գազ արգոն և ընդամենը 0,03 տոկոս ածխաթթու գազ, ապա այս նույն ածխաթթու գազը Վեներայի մթնոլորտում կազմում է 97 տոկոս, Մարսի մթնոլորտում՝ 60 տոկոսից ավելի. երկու մոլորակներում էլ թթվածնի պարունակությունը շատ աննշան է, իսկ ազոտը 2 տոկոսից պակաս է:

Ո՞րն է այս հակասության պատճառը: Չէ՞ որ Երկիրը թե՛ Արևից ունեցած հեռավորությամբ, թե՛ նրանից ստացած ջերմությամբ, թե՛ մթնոլորտի խտությամբ գտնըվում է այդ երկու մոլորակների միջև: Մի՞թե նրանք ավելի ակտիվ են, քան Երկիրը, և որտեղի՞ց է ածխաթթու գազի նման առատությունը:

Գաղտնիքը նրանում է, որ հրաբուխներից, ընդերքից դուրս ժայթքող գազերը այդ մոլորակներում սպառող չունեն, իսկ Երկրի վրա դրանք կլանող երկու խոշոր օբյեկտներ կան՝ օվկիանոսը և ցամաքի բուսական աշխարհը: Այո, դրանք են, որ ածխաթթու գազը բաժանում են թթվածնի և ածխածնի, առաջինը ետ են ուղարկում, իսկ երկրորդը՝ կլանում: Ահա թե ինչու այդ գազը շատ քիչ է մեր մոլորակում: Եվ քանի որ Մարսում և Վեներայում ո՛չ բուսականություն կա և ո՛չ էլ օվկիանոս, ածխաթթու գազի մեծ կուտակում է առաջացել:

Ահա Երկրի այդ միջանկյալ դրության շնորհիվ նրա վրա կյանք է ստեղծվել, իսկ այդ մասին մեզ ասացին... այլ մոլորակները:

*Վ. ՊՐՈՆԵՏՅԱՆ*

*ֆիզ. մաթ. գիտ. թեկնածու*

# ԳԻՐՔ՝ ԲԱՐՈՒԹՅԱՆ ԵՎ ԱԶՆՎՈՒԹՅԱՆ




Պատանի՛ բարեկամներ, սիրով ու ափսոսանքով եմ գրում այս տողերը մի մարդու մասին, որն այլևս չի կարող հեքիաթներ ու պատմվածքներ գրել ձեզ համար: Նա վաղ հեռացավ կյանքից:

Գրիգոր Մակունցը շատ էր ընթերցում, շատ էր սովորում, չէր բավարարվում իր գրածներով, աշխատում էր մշակել, կատարելագործել դրանք: Նա իր գրական փորձերն սկսել էր տակավին պատանի հասակում, բայց որպես մանկագիր ձևավորվեց ու աճեց հատկապես «Պիոներ» ամսագրում աշխատելու տարիներին, և նրա առաջին հեքիաթները տպագրվեցին այս ամսագրում:

Գրիգորը ազնիվ ու զգայուն մարդ էր, ընկերասեր, բարի: Առանց այս մարդկային բարձր հատկանիշների չէին կարող գրվել բարություն ու ազնվություն սովորեցնող նրա հեքիաթները, որոնց դուք արդեն ծանոթ եք «Հեքիաթ սիրում են բոլորը» գրքից: Վերջերս լույս տեսավ Գր. Մակունցի հեքիաթ-պատմվածքների նոր գիրքը՝ «Զրուսանք կախարդի հետ»:

Առաջին բանը, որ կուզեի դուք նկատեիք այդ գրքում, առանց ավելորդ բառերի ու խճողվածության, քիչ խոսքով միտքն արտահայտելու արվեստն է: Իսկույն կնկատեք, որ Մակունցը չի օգտագործում խրթին, անսովոր բառեր, գրում է պարզ, խոսակցական լեզվով, ուստի գեղեցիկ է հնչում հեքիաթն ամբողջությամբ՝ իր արտահայտած մտքերով, զգացմունքներով, պարզ ոճով և կուռ կառուցվածքով:

Այդ կարճ և իմաստալից հեքիաթները սովորեցնում են ոչ միայն սիրել աշխատանքը, ընկերներին և ատել գոռոզությունը, ծուլությունը, այլև՝ մտածելով կարդալ հեքիաթը, սեփական դատողությամբ ընկալել նրանց բուն իմաստը: Ուշադրություն դարձրեք հատկապես «Մտի կարծիքը», «Թռչող եղջերուն», «Իմաստունները», «Գորտի ճանապարհորդությունը» պատմվածք-հեքիաթներին և փորձեցեք թափանցել դրանց բուն էության մեջ, որն ավելի խորն է, քան կարելի է զգալ առաջին հայացքից:

Ազնվություն, բարություն, նրբազգացություն — ահա հիմնականում այն, ինչ դուք կգտնեք այս հետաքրքրական ու արժեքավոր գրքում:

*ԳԱՌՆԻԿ ԳԱԼՍՏՅԱՆ*

Գիտե՞ք, որ...

## ԵՐԲ ԱՋԸ ՉԳԻՏԻ, ԹԵ ԻՆՉ Է ԱՆՈՒՄ ՁԱԽԸ



...Կյանքն անտանելի է դառնում: Համենայն դեպս, այսպիսին է ամերիկյան Սան-Դիեգո քաղաքի գազանանոցում գտնվող արտասովոր օձի վիճակը: Այս օձն ունի երկու գլուխ, որոնք արտաքին գրգռիչներին արձագանքում են միմյանցից անկախ: Այն պահին, երբ գլուխներից մեկը նետվում է դեպի մուկը, մյուսն հարձակվում է մողեսի վրա, բնականաբար, շատ չարչարանքներ պատճառելով օձի խեղճ ու կրակ մարմնին:

## ԱՊԱԿԻՆ՝ ԳՈՂԵՐԻ ԴԵՄ



Այս ապակին սովորականից տարբերվում է իր բաղադրությամբ: Երբ ջարդվում է, նրա բեկորները տագնապահար սկսում են կարմիր լույս արձակել:

## ՁԻՆ ԱՌՅՈՒԾԻՆ ԽԵՂԴԵՑ



Եթովպիայի գյուղերից մեկում սոված առյուծը մակաղատեղի սողոսկեց և երկու այծ հոշոտեց: Հետո, երբ առյուծը պատրաստվում էր նետվել ավանակի վրա, ավանակի մոտ կանգնած ձին ատամներով հափռեց առյուծի կոկորդը և խեղդեց:

## ԱՂԲԸ ԱՐԺԵՔԱՎՈՐ ՆՅՈՒԹ Է

Հռոմում մեկ տարվա ընթացքում գոյանում է մոտ 750 հազար տոննա աղբ, որի 500 հազար տոննան վերամշակվում է թուղթ, անասնակեր, արհեստական պարարտանյութեր, սև մետաղներ և պլաստմասսաներ արտադրող երկու գործարանների կողմից: Նմանօրինակ վերամշակումը կատարվում է 1964 թվականից և արդեն փորձով ապացուցված է, որ քաղաքի կենցաղային աղբն իր մեջ պարունակում է 40 տոկոս օրգանական նյութեր, 18 տոկոս թուղթ, 4 տոկոս պլաստմասսա և 4 տոկոս ապակի: Սև մետաղները աղբից առանձնացվում են էլեկտրամագնիսների միջոցով: Օրգանական նյութերը բաժանվում են երկու խմբի: Մեկը՝ ուտելիքի մնացորդները՝ լվանում են, ախտահանում և ստանում հրաշալի անասնակեր՝ գրանուլ: Մյուսը՝ փողոցների և վաճառատների աղբը ենթարկելով հարստացման, ստանում են արհեստական պարարտանյութեր: Աղբից առանձնացված պլաստմասսաներից պատրաստում են էլեկտրամալուխների թմբուկներ: Թուղթը վերամշակում են և ստանում պուլպ կոչվող նյութը, որից կարելի է լրագրի կամ զուգարանի թուղթ ստանալ: Աղբի 40 տոկոսը կազմող այն նյութերը, որոնք հնարավոր չէ վերամշակել՝ օգտագործվում են ջեռուցման համար՝ որպես վառելանյութ:




Լույս է տեսնում 1923 թվականից



ՊԻՈՆԵՐ

5. 1979 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ԶՎԱՐԹ ՎԱՐԴԱՆՅԱՆԻ (13 տ.)


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԱԿԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՊԵՏՐՈՍՅԱՆ Թ., ՍԻՐԱԿՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր):

«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—82—72, 58—08—88, 56—14—86:

ՎՖ 01759: Պատվեր 427: Տպաքանակ 52000: Տպ. 3 մամ.:
Հանձնված է արտադրության 28 II 1979 թ.:
Ստորագրված է տպագրության 23 IV 1979 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

# ՃՇԳՐՏՈՒԹՅԱՆ ԱՍՏԻՃԱՆՆԵՐՈՎ ԴԵՊԻ ՑԱԾ

Մենդելեևի անվան չափագիտության ինստիտուտում ավելի քան հիսուն պետական չափանմուշներ (էտալոններ) են պահպանվում: Իհարկե, այդ բոլորի մասին պատմել հնարավոր չէ: Թեև մարդու համար հավասարապես կարևոր են բոլոր չափումները, բայց մենք կըպատմենք միայն երկուսի մասին, որոնք առավել տարածված ու ծանոթ են:

## ՄԵՏՐ

Պլատինի և իրիդիումի համաձուլվածքից պատրաստված այս ձողը 85 տարեկան է: Նրան շատ ու շատ զգույշ են վերաբերվում, ոչ որ, անգամ ինստիտուտի դիրեկտորը, իրավունք չունի այն վերցնելու. չերկիզվող պահարանը կարող է բացել միայն երեք հոգուց կազմված հանձնաժողովը, որի անդամներից յուրաքանչյուրը բարդ լեզվակով բանալի ունի:

Ինչի՞ համար է նման նախազգուշությունը: Չէ՞ որ պլատինի և իրիդիումի համաձուլվածքը շատ հուսալի նյութ է, չի վախենում խոնավությունից, թթուների ազդեցությունից, ալկալիներից, մեխանիկական հարվածներից: Ի՞նչ կպատահի, եթե որևէ մեկը այն ձեռքը վերցնի: Պարզվում է, որ այդ անթերի, անսխալական ետալոնը, որին պետք է հավասարվեն մնացած բոլոր մետրերը, եթե ձեռքով բռնեն՝ ձեռքի տաքությունից կերկարի:

Այդ դեպքում ինչպե՞ս վարվել, ինչի՞ց պատրաստել մշտական, ոչ մի բանից փոփոխության չենթարկվող մետր:

Գիտնականներին վաղուց էր անհանգստացնում այս հարցը: Եվ ահա ծնվեց մտահղացումը՝ երկարությունը չափելու համար օգտագործել լուսային ալիքը: Մտահղացումն այնքանով էր լավ, որ լուսային ալիքի երկարությունը միշտ անփոփոխ է:

«Լուսային քանոնի» վրա աշխատանքները հանգեցրին այն բանին, որ ստեղծվեց կրիպտոն գազով լցված փողակ: Այն փակ պահվում է հատուկ խցում, ուր պահպանվում է մինչև հարյուրերորդականի ճըշտությամբ կայուն ջերմաստիճան:

Այդ չափանմուշի հետ աշխատելիս մարդու ներկայությունը խցիկում ցանկալի չէ, քանի որ նրա մարմնի ջերմությունը կարող է ազդել չափումների ճշտության վրա: Այդ պատճառով էլ ղեկավարման վահանները ու օժանդակ սարքերը տեղադրված են խցիկից դուրս՝ հարևան սենյակում, սարքերի ցուցումներին չափագետները հետևում են դիտախողովակների միջոցով:




Գիտնականները նույնքան խնամքով և զգուշությամբ են վերաբերվում կիլոգրամի չափանմուշի կըշռաքարին: Նրա համար առանձնացված սենյակը նման է կրկնակի պատերով թերմոսի, այնտեղ ջերմությունը միշտ Ցելսիուսի 20 աստիճան է:

Երբ զանգվածի չափման լաբորատորիայի աշխատակիցը չափանմուշն ու կշռաքարը, որը պետք է համեմատվի չափանմուշի հետ, կշեռքի նժարներին տեղադրելուց հետո դուրս է գալիս այդ սենյակից, մոտավորապես մի ամբողջ օր պետք է սպասի, որպեսզի սենյակում վերականգնվի նախկին ջերմությունը: Եվ միայն դրանից հետո նա սկսում է կշռել:

Ոչ թե փոշու հատիկ, այլև լույսի պատահական ճառագայթ չպետք է ընկնի կշեռքի վրա: Այդ պատճառով այն դրված է լույսն անդրադարձնող հայելապատ պատյանի մեջ: Իսկ պատյանը տեղադրված է շենքին չհաղորդակցվող թրթիռապաշտպան հիմքի վրա:

Կիլոգրամի պետական չափանըմուշից չափագետները օգտվում են շատ ու շատ հազվադեպ, գրեթե տասը տարին մեկ անգամ, քանի որ ամեն դիպչելուց աննշմարելի չափով այն պակասում է, և փոփոխվում է կշռաքարի զանգվածը:

Համեմատելու համար ստուգման չափանմուշի վկային, նրա հետ համեմատում են աշխատանքային չափանմուշները, սրանց հետ էլ՝ տիպայինները, և այսպես՝ մինչև առևտրում կիրառվող կշռաքարը: Ճշտության աստիճաններով դեպի ցած... Ի դեպ առևտրում օգտագործվող կշռաքարերին թույլատրըվում է «սխալվել» մինչև 600 միլիգրամ:

ԳԻՆԸ 15 Կ. ԻՆԴԵՔՍ 77806



# Գարնան էստաֆետը

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Ճեղքելով ձմռան
Կապանքները կուռ,
Ձնծաղիկները լեռներից մաքուր,
Գարունը առած եկան ու բերին,
Բերին ու տվին մանուշակներին։

Երկինքը լույսով
Համբուրեց հողին,
Եվ համբույրները դարձան աղբյուրներ,
Իսկ աղբյուրների կապույտ զգվանքից
Եկան, ժպտացին կապույտ ծաղիկներ։

Բույր ու բերկրանքի
Փնջերով անմար
Ապրիլը կանգնեց մայիսի շեմին,
Եվ ծաղիկներն էլ գարունը առած,
Տարան հանձնեցին երեխաներին։

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ